Սովետական հայրենասիրությունը ոչ թե անջատում, այլ ընդհակառակը, մեր երկրի բոլոր ազգերին ու ժողովուրդներին միաձուլում է մի միասնական եղբայրական ընտանիքի մեջ:

**Ի. ՍՏԱԼԻՆ**




*Եղբայր ազգերի մեծ ընտանիքում*
*Հաստատվիր, աճիր, բերկրիր ու խնդա.*
*Ծաղկիր ու փթթիր, գեղեցիկ երկիր,*
*Ցնծա վառ արևով, երկիր Վրաստան:*

(ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԻՄՆԸ)

*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*




№ 6

ՀՈՒՆԻՍ

1953 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 25-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**Երիտասարդ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ կարդում է Շ. Ռուսթավելու «Վագրենավորը» պոեմը:**

*Գործ նկ. Ի. ԹՈԻՁԵԻ*

**ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԶՈՐՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ՈՒԺԵՂԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ, ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԱՋՈՂ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ՎՃՌԱԿԱՆ ԳՈՐԾՈՆՆԵՐԻՑ ՄԵԿՆ Է ՀԱՆԴԻՍԱՆՈՒՄ:**

**ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

(ՀԼԿԵՄ 15-րդ համագումարում արտասանած ճառից)

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆ

1901 թվականի դեկտեմբերի 31-ին ընկեր Ստալինի հրավերով, նոր տարին դիմավորելու համար բանվոր Ս. Լոմջարիայի բնակարանն էին հավաքվել Բաթումիի առաջավոր բանվորները: Այստեղ էր, որ ընկեր Ստալինն ասաց իր անմոռանալի խոսքերը. «Շուտով կծագի արևը: Այդ արևը կշողա մեզ համար, մեր երեխաների ու թոռների համար...»

Եվ այդ արևը շողաց:

1921 թվականի փետրվարի 25-ին, Լենինի—Ստալինի պարտիայի առաջնորդությամբ, ռուս ժողովրդի օգնությամբ, Վրաստանի բանվոր դասակարգը և աշխատավոր գյուղացիները տապալեցին շահագործողների ծանր լուծը և երկրում սովետական կարգեր հաստատեցին:

Այդ օրվանից անցել է երեսուներկու տարի:

Սովետական Վրաստանը Միության առաջավոր ռեսպուբլիկաներից մեկն է դարձել: Նրա անսպառ հարստությունները՝ մարգանեցը, քարածուխը, երկաթը, նավթը, գունավոր մետաղները և ոսկին ճնարավորություն տվին բուռն կերպով զարգացնելու արդյունաբերությունը: Ստալինյան հնգամյակների տարիներին սունկի նման աճեցին նոր քաղաքներ ու գյուղեր, կառուցվեցին անթիվ ֆաբրիկաներ ու գործարաններ, հիդրոէլեկտրակայաններ, դպրոցներ, կինոյի և թատրոնի շենքեր, հանգստյան տներ, ստադիոններ...

«Սովետական Միության մարգարիտ». այսպես են կոչում եղբայրական ծաղկող այդ ռեսպուբլիկան: Եվ դա ճիշտ է:



ԵՂԲԱՅՐ ԵՆՔ ՄԵՆՔ՝ ԵՂԲՈՐ ՀԱՄԱՐ,
ԻՐԱՐ ՀԱՆԴԵՊ ՍԻՐՈ ՋԱՀԵՐ,—
ԵՐԿԱ՜Ր ԱՊՐԵՔ, ԻՄ ԽԱՆԴԱՎԱՌ
ՀԱՅ ԸՆԿԵՐՆԵ՛Ր՝ ԾԵՐ ՈՒ ՋԱՀԵԼ...

**ԳԱԼԱԿՏԻՈՆ ՏԱԲԻՁԵ**

(Վրաստանի ժողովրդական պոետ)

Հյուր եկած հազարավոր մարդիկ, թեկուզ միայն ռեսպուբլիկայի մայրաքաղաք Թբիլիսին տեսնելով կարող են հաստատել այդ:

1500 տարվա պատմություն ունի Թբիլիսին: Օտար զավթիչները շատ անգամ են ավերել, մոխիր դարձրել այդ քաղաքը: Բայց վրաց ժողովրդի կամքով նորից ու նորից վերականգնվել է այն:

Դարավոր քաղաքը սովետական կարգերի շնորհիվ անճանաչելի է դարձել: Ահա նոր Թբիլիսին՝ այգի-քաղաքը: Նրա միջով հոսող Քուռ գետի վրա կամար են կապել վեց հիասքանչ կամուրջ, որոնցից ամենագեղեցիկը կրում է մեծ Ստալինի անունը: Ահա առաջնորդի անվան առափնյա ասֆալտապատ լայն փողոցը: Ծառերի ու ծաղիկների մեջ վեր բարձրացած մարմարե բարձր պատվանդանից քաղաքին է նայում սիրելի Ստալինի հոյակապ մոնումենտը: Նա կարծես թե հսկում է մարդկանց խաղաղ աշխատանքը, մանուկների խաղաղ քունն ու երջանիկ կյանքը:

Առաջնորդի անվան գետափնյա փողոցի վերջում է գտնվում սպորտ - լողարանը, բարձունքի վրա կառուցված կրկեսի հոյակապ շենքը: Նրանից ոչ հեռու երեվում է մայրաքաղաքի ամենաբարձր՝ տասնըմեկ հարկանի բնակելի շենքը: Այդտեղից տրամվայը կամ տրոլեյբուսը ձեզ ուղիղ կտանի քաղաքի զարդը կազմող Ռուսթավելու անվան պողոտան: Միայն այդ փողոցում գործում են ութ թատրոն և կինոթատրոն, երեք թանգարան, պատկերասրահը, թատերական ինստիտուտը: Այդտեղ են գտնվում նաև Կառավարական տունը, «Վրացծուխ» կոմբինատի, Մարքսի—Էնգելսի—Լենինի ինստիտուտի Թբիլիսիի ֆիլիալի գեղաքանդակ շենքերը, իսկ փողոցի վերջում հպարտ կանգնել է մեծ բանաստեղծ Ռուսթավելու գեղեցիկ հուշարձանը:



Լեհական նշանավոր երաժիշտ Հ. Վենյավսկու անվան միջազգային երկրորդ կոնկուրսի լաուրեատ ջութակահարուհի Մարինե Յաշվիլի։
Ֆոտո՝ Մ. ԿՎԻՐԻԿԱՇՎԻԼՈՒ

Երբ իջնում է ամառային երեկոն ու ամբողջ Թբիլիսին ողողվում է ծով լույսերով, քաղաքացիներից շատերը գնում են Ստալինի անվան կուլտուրայի և հանգստի հոյակապ պարկը, որը տարածվել է ֆունիկուլյորից վերև՝ ընդարձակ սարահարթի վրա:

Անցյալ տարվա վերջին մայրաքաղաքի աշխատավորները մի գեղեցիկ նվեր էլ ստացան: Նախկին հոգևոր սեմինարիայի շենքում բացվեց վրացական արվեստի թանգարանը: 1894 թվականից մինչև 1899 թվականն այդ շենքում սովորել է մեր մեծ առաջնորդ

Ստալինը: Այդ ժամանակ նա արդեն ղեկավարում էր քաղաքի բանվորական խմբակները:

Թբիլիսին ռեսպուբլիկայի արդյունաբերության սիրտն է: Այստեղ են գործում Ստալինի անվան շոգեքարշա-վագոնանորոգման, Կիրովի անվան դազգահաշինական, 26 Կոմիսարների, Օրջոնիկիձեի անվան մեքենաշինական հզոր գործարանները, մետաքսագործական, կամվոլ-մահուդի, կոշիկի, կարի ֆաբրիկաները:

Մայրաքաղաքից ոչ հեռու բարձրացել է Վրաստանի ամենաերիտասարդ քաղաքը՝ Ռուսթավին: Նրա տեղը մի քանի տարի առաջ չոր ու ամայի տարածություն էր: Ընկեր Ստալինի անմիջական նախաձեռնությամբ այս խանձված հողերը կյանք առան: Այստեղ կառուցվեց Անդրկովկասյան մետալուրգիական հզոր գործարանը: Այդ գործարանը Հայրենիքին տալիս է պողպատ, գլանվածք և խողովակներ: Մի տարի հետո նա կտա նաև չուգուն:

Իր նորակառույց գործարաններով, դըպրոցներով և այլ շենքերով կարող է հպարտանալ նաև ռեսպուբլիկայի երկրորդ քաղաքը՝ Քութաիսին: Դրանց մեջ ամենամեծը ավտոմոբիլային գործարանն է: Նրա արտադրած հազարավոր գեղեցիկ և դիմացկուն ավտոմեքենաներն այժմ աշխատում են մեր երկրի բազմաթիվ քաղաքներում ու գյուղերում, կառուցումներում:

Վրաստանի գործարանները երկրին տալիս են նաև հողահան մեքենաներ, մետաղահատ և մանածագործական դազգահներ, մարգանեց, ածուխ, ցեմենտ, մարմար, գործվածքներ, կոնսերվներ:

Ռեսպուբլիկան հզոր է նաև իր 226 հիդրոկայաններով, որոնց տուրբինները լույս ու էներգիա են տալիս օրեցօր աճող արդյունաբերությանը, գյուղատնտեսությանը, կուլտուրայի և հանգստի օջախներին:

Արևաշող երկիր է Վրաստանը: Ձմռանն անգամ այստեղ աճում են հազար գույնի, հազարանուն ծաղիկ ու թուփ, մերձարևադարձային բույսեր: Մարգագետինները միշտ ծածկված են թավիշ կանաչով: Այդ արևաշող երկրում է, որ սովետական տարիներին զարգացավ առաջնակարգ, մեքենաներով հարուստ գյուղատնտեսությունը:

Երկրի տաք կլիման նպաստում է Սև ծովի ափերին և շատ ուրիշ շրջաններում անեցնել թեյ, ծխախոտ, տունգ, էվկալիպտ, ազնիվ դափնի: Իսկ համեղ և հյութալի նարինջը, մանդարինը և լիմոնը հասնում են մինչև Մոսկվա, Կիև, Խաբարովսկ և այլ հեռավոր վայրեր: Վրաստանում աճած այդ մրգերն ամեն տեղ զարդարում են սովետական քաղաքացու սեղանը:

Ավելի մեծ թափով կզարգանա գյուղատնտեսությունը ապագայում: 1957 թվականին թեյի պլանտացիաների տարածությունը կհասնի 80.300 հեկտարի: Նոր հինգամյակի ընթացքում կկառուցվեն 26 ֆաբրիկա, որոնք տարեկան վերամշակելու են 78 հազար տոննա թեյատերև: Տարեցտարի կավելանա ցիտրուսային բույսերի բերքատվությունը, հացահատիկների ցանքերը: 1955 թվականին մեր Հայրենիքի քաղաքացիները կստանան 700 միլիոն ցիտրուսային պտուղ:



*Թբիլիսիի Ն. Սուլխանիշվիլու անվան երաժշտական դպրոցի ուսման գերազանցիկ Թ. Նացվլիշվիլին պատրաստում է դասերը:*

Անջրդի հողերը բերքառատ դարձնելու համար Սովետական Վրաստանում կառուցվել են բազմաթիվ ջրանցքներ: Մի քանի տարի առաջ Թբիլիսիի մոտ գտնվող «Աղի լճերի» տիղմոտ ափերին կարելի էր տեսնել ռետինե երկարավիզ կոշիկներ հագած հատ ու կենտ որսորդների: Իսկ 1951 թվականին այդ վայրը սկսեց ապրել նոր կյանքով, ավարտվեց Ստալինի անվան Սամգորիի ոռոգիչ սիստեմի կառուցումը: Դրա շնորհիվ այժմ «Աղի լճերի» մեջ են թափվում Կովկասյան ձյունապատ լեռնաշղթայից սկիզբ առնող Իորի գետի ջրերը և այդտեղ գոյանում է «Թբիլիսիի ծովը»: Նրա ջրերով կոռոգվեն Սամգորիի 41 հազար հեկտար խոպան հողերը: Սամգորիի ծաղկող տափաստան են եկել արդեն շատ գյուղացիներ և հիմնել են նոր կոլտնտեսություններ:

«Թբիլիսիի ծովը» աշխատավորների համար դառնում է ամառային հանգստի ամենասիրելի վայրերից մեկը: Ամռան արևի շողերից հայելու պես փայլփլող ջրերի վրա կսահեն բազմաթիվ նավակներ: «Ծովափին» կկառուցվեն ամառանոցներ, հանգստյան տներ, սպորտային կայաններ:

Ամռան ամիսներին Վրաստանի ձյունապատ լեռների ստորոտներին, կանաչ հովիտներում, զովաշունչ անտառների մեջ, գետերի ափերին հնչում է հազարավոր մանուկների երգն ու ծիծաղը: Այդ գեղատեսիլ վայրերում բացվում են պիոներական ճամբարներ: Սպիտակ վրանների խիտ շարքերը զարդարում են բնությունը: Գիշերվա մթության մեջ երկինք են բարձրանում խարույկների ալ բոցերը:

Սև ծովի ջրերում լողացած, արևի լողանք ընդունած պիոներներն ու դպրոցականները սիրով են հիշում ամռան հանգիստը: Բնության գրկում կազդուրված, նրանք վերադառնում են իրենց սիրելի դպրոցը:

Այո՛, գեղատեսիլ է Սովետական Վրաստանը, անսպառ են նրա հարստությունները: Բայց նրա ամենամեծ գանձը սովետական իշխանության տարիներին աճած նոր կադրերն են, նոր մարդիկ, որոնք իրենց երկիրը դարձրել են հզոր ու հիասքանչ սովետական ռեսպուբլիկա:

*Հ. ՍԵՐՈԲՅԱՆ*




*ԻՈՍԵԲ ՆՈՆԵՇՎԻԼԻ*

Եկե՛ք, սրտաբաց սպասում է ձեզ
Ամեն վրացի ժպտով հյուրասեր,
Տեսեք արևշող օրրանը մեր վես,
Ուր մեր պապերի հույսերն են ծաղկել:
Ուր լեռն ուսերով երկինքն է պահում,
Կանաչ չուխայով սահմանին կանգնած,
Ուր ամառ-ձմեռ նարինջ են քաղում
Նոր Կոլխիդայի դուստրերը սևաչ:
Սպասում է ձեզ զուլալ Արագվին,
Որ լեռան բաշից ընկնում է թափով,
Եկեք Ղազբեգի գյուղը լեռնային,
Հիացեք չքնաղ ժայռ ու քարափով:
Կանչում է խինդով զարթնած Սամգորին,
Հովիվներն արի՝ սրտերով հրկեզ.
Իորին ծափով հասել է Քռին՝
Մեկտեղ են զուգում Թբիլիսին պերճ:
Տեսեք լի ու բաց սեղանը վրաց,
Ու հենց որ երգով ընդա սիրտը ձեր—
«Մրավալժամիեր»[1] երգենք սրտաբաց,
Մրավալժամիեր, մեր մտերիմնե՛ր:
Քայլեցեք մեր նոր, ազատ ոստանում,
Ձեզ չեն հոգնեցնի ճամփաները ձիգ,—
Փետրվար է արդ, բայց Վրաստանում
Վառ ծաղիկներ են փնջում վրացիք:
Փնջեցեք մեզ հետ, աստղերի նման
Դոնակը զուգենք լույս տնակի,
Եվ եղբայրության երդումով անմար
Համբուրենք Գորու հողը հայրենի:
Եկե՛ք, սրտաբաց սպասում է ձեզ
Ամեն վրացի ժպտով հյուրասեր,
Տեսեք արևշող օրրանը մեր վես,
Ուր մեր պապերի հույսերն են ծաղկել:

*Թարգմ. Հ. ԿԱՐԱՅԱՆ*

1 *«Մրավալժամիեր» — վրացական խնջույքի երգ։*

# ԴԱՐԱՎՈՐ, ԲԱՅՑ ԵՐԻՏԱՍԱՐԴ ՔԱՂԱՔԸ

Բ. ՍԵՅՐԱՆՅԱՆ

## 1

Գետափից ոչ հեռու լսելի դարձավ ինչ-որ քաղցր մեղեդի. մեկը սրտանց երգում էր «Ուրմուլին» — սայլապանի երգը:

Ճանապարհը թողած, ձայնի ուղղությամբ բարձրացանք դեպի վեր: Լիախվիին նայող բարձր թմբի վրա, մեջքը խնձորենուն հենած, նստել էր կայտառ մի ծերունի: Նա ավանդական չոնգուրը գոգին, հանգըստանում էր: Չէր նվագում: Հանգստանում էր ու երգում, կամ, ավելի ճիշտ կլինի ասել՝ երգով էր հանգստանում: Դա յոթանասունամյա Գոչան էր՝ այդ կողմերի նշանավոր երգասացը, թշերը կարմիր՝ աշունքվա մասուրի պես, մազերը ձյունված, ամպի պատառիկը ծնոտին:

Իմացանք. գալիս էր Տրիֆոնիգէսի երկրորդ հերթի շինարարությունից: Հիդրոկայանի կառուցման վրա, բանվորներից բացի, աշխատում են հարյուրավոր կոլտնտեսականներ: Ծերունին տեսության էր գնացել իրենց գյուղի տղաներին:

— Տեսա, սիրտս խաղաղվեց: Առյուծի պես են աշխատում: Կպրծնե՜ն.—համոզված ասաց նա, հետո գրկի մեջ հանգիստ պըտտեց չոնգուրը, բութ մատն անփութորեն խաղացրեց լարերի վրա և համեստորեն ավելացրեց.— Մի քիչ էլ ուրախացրի...

Հեռվում, թանձրացող մուժի մեջ, գծվում էր Գորիի ամրոցը: Բլրի կատարին թառած, նա անհիշելի ժամանակներից նայում է շուրջը փռված քաղաքին: Էլեկտրական լույսերի շարանը պայծառորեն գծում է քաղաքի կենտրոնական պողոտան ու նրա հարակից փողոցները:

Ծեր երգասացը, իր վճիտ աչքերը կկոցելով, նայում է քաղաքին ու ժպտադեմ դառնում մեզ:

—Զարմանալի բան է մարդու հիշողությունը: Արմատի նման անբաժան է մարդուց:

Չոնգուրը գոգի մեջ շրջելով, ծերունին գրպանից դանդաղ հանում է ծխամորճն ու թութունի տոպրակը դնում ծնկան վրա: Հետո մտախոհ, ասես ինքն իր համար, պատմում, թե ինչպես շատ տարիներ առաջ, երբ ինքը հազիվ 10—12 տարեկան մի պատանի էր, այս նույն ճանապարհով Մաքսիմ Գորկուն ուղեկցել է դեպի Գորիի շրջակա գյուղերը:




Ի. Վ. Ստալինի անվան Անդրկովկասյան մետալուրգիական գործարանի խողովակագլանման ցեխում:

## ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ԱՂԱՎՆԻՆ

*ԱՇՈՏ ԳՐԱՇԻ*

Ձեռքին՝ ճերմակ աղավնի,
Վրաստանից ճարևան,
Մի գեղեցիկ պատանի
Երեկ եկավ Երևան:
Նա եկել էր Գորիից
Ընկերներով միասին,
Աչքերի մեջ լուսալից
Շողն էր խաղում մայիսի:
— Բարով եկա՛ր, Սուլիկո՛,
Ասացի ես սրտագին,
— Ես ստացա, Սուրի՛կ, քո
Նամակները թանկագին:
Ես ստացա, կարդացի
Մեր ջոկատի ճավաքում,
Պիոներները վրացի
Ձեզ ողջույն են ուղարկում:
Ե՞րբ եք գալու դուք Գորի,
Ե՞րբ եք գալու Վրաստան,
Առաջնորդի պանծալի
Մանկուց տունը սրբազան:
Այսպես ասաց պատանին
Ամբիոնից միտինգի
Ու բաց թողեց աղավնին
Դեպի կապույտ երկնքի:
Եղբայրության աղավնին
Ճախր էր անում երկնքում,
Երջանկության երգ էին
Մեր սրտերը ջերմ երգում:

— Կյանքումս առաջին անգամ էի տեսնում այդպիսի մարդու: Ամբողջ Ռուսաստանը շրջել էր ոտքով, հետո եկել, որ մեր երկիրը շրջի: Ոչ հանգիստ, գիտե՞ք, ոչ դադար: Ու հիմա ինքս ինձ մտածում եմ՝ եթե մի հրաշքով աչքերը բացեր—տեսնես կճանաչե՞ր մեր քաղաքը՝ մեր Գորին:

Եվ, իրոք, ի՞նչ է մնացել նախկին Գորիից՝ գավառական այն փոքրիկ քաղաքից:

Երբ 1892 թվականին, Վրաստանը շրջելիս, ռուս մեծ գրող Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկին այցելեց Գորի, Քուռ գետի հովտում փռվող վրացական այդ հնագույն քաղաքը հազիվ թե մի մեծ գյուղի չափ լիներ: Գորկին «Նիժեգորոդսկի լիստոկ» թերթի էջերում 1896 թվականին հրապարակած իր «Գորիում» ակնարկի մեջ այդպես էլ գրեց.

«Գորին մեծ չէ. ռուսական միջակ գյուղի չափ: Նրա կենտրոնում բարձրանում է մի բլուր, բլրի վրա՝ ամրոց, բլրի լանջերին ու փեշերին ցաք ու ցրիվ փռված են փոքրիկ խրճիթներ ու տնակներ, համարյա բոլորը՝ կրածեփ: Ամբողջ քաղաքի վրա փռված է ինչ-որ առանձնության և վայրի օրիգինալության գորշ կոլորիտ»:

Իսկ հիմա՞...

2

Գեղեցիկ է այդ դարավոր, բայց երիտասարդ քաղաքը: Ամեն գարնան նա փթթում է մրգաշատ ծառաստանների մեջ: Ամեն գարնան մի նոր հրապույր է ստանում նրա յուրաքանչյուր փողոցն ու պուրակը:

Քարթլիի գեղեցկուհի. այդպես են կոչում նոր Գորին և այդ անունն անչափ սազում է նրան:

Հիմա այստեղ խաչաձևվում են մեր անծայրածիր Հայրենիքի բոլոր ռեսպուբլիկաներից, բոլոր անկյուններից, աշխարհի բոլոր ծայրերից ամեն օր ժամանող հարյուրավոր այցելուների ճամփաները: Գալիս են ամեն ազգի, ամեն ցեղի, ամեն հասակի մարդիկ, սիրով ու հափշտակությամբ դիտում քաղաքի յուրաքանչյուր քարը, փողոցը, ծառը, ասես այդ բոլորի վրա մտովին փնտրում պատանի Սոսո Ջուղաշվիլու ձեռքի ու հայացքի հետքը: Նրանց բոլորին ձգում, այստեղ է բերում բազալտե և մարմարե պավիլյոնի մեջ ամփոփված այն փոքրիկ տնակը, ուր ծնվել և իր մանկական տարիներն է անցկացրել մեր սիրելի հայր և ուսուցիչ, մեր հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինը:

Ասում են՝ մի անգամ հարյուրամյա Ջամբուլը խոր ակնածանքով ներս մտավ ընկեր Ստալինի տուն-թանգարանը, դիտեց նրա պարզ ու հասարակ կահավորումը, հետո երկար ժամանակ կանգ առավ մեծ Ստալինի մոր պատկերի առաջ ու ասաց.

— Ես հիշում եմ ժողովրդի իմաստուն խոսքը՝ «հանճարին ժողովուրդն է ծնում, իսկ որդուն ծնում է մայրը»: Շնորհակալություն քեզ, Վրաստանի դո՛ւստր, որ քո հանճարեղ որդուն մեզ ես նվիրել:—Եվ հենց Գորիում Ջամբուլը հյուսեց իր գեղեցիկ երգը Ստալինի մասին:

«Ստալի՛ն, քեզ եմ երգում նորից այս երգով...
Քո սիրուց ուժ առավ, դարձավ պատանի
Մեր Ջամբուլի հոգին հարյուր տարեկան.
Եվ ես երգերս ողջ, իմ կյանքն ու հոգին
Քեզ եմ տալիս սիրով մինչև օրս վերջին»:

Գորիի վերակառուցումն սկսվեց 1934 թվականին, ընկեր Լ. Պ. Բերիայի նախաձեռնությամբ: Քաղաքն օր-օրի բարեկարգ-



Թբիլիսիի 101-րդ մանկապարտեզի սաները Կիկեթիի ամառանոցում։

վեց ու գեղեցկացավ։ Նա առաջ քաշվեց ռեսպուբլիկայի լավագույն քաղաքների շարքը, դարձավ արդյունաբերական խոշոր կենտրոն։

Հիմնովին վերակառուցվեց քաղաքի կենտրոնական փողոցը՝ Լենինի անվան պողոտան։ Դեմ դիմաց բարձրացան գեղեցիկ շենքեր՝ ճարտարապետական նոր ձևավորումով, սյունազարդ ճակատներով, լայն լուսամուտներով։ Մանկավարժական ինստիտուտի, միջնակարգ դպրոցների, դրամատիկ թատրոնի, հյուրանոցի, կինոթատրոնի և այլ շենքերն ու բնակելի նոր տները, պուրակներն ու այգիները կազմում են նոր Գորիի զարդը։

Հայրենական Մեծ պատերազմից հետո ռեսպուբլիկայի լավագույն ճարտարապետները կազմեցին Գորիի վերակառուցման տասնհինգամյա գլխավոր պլանը։ Այդ պլանն արդեն գործողության մեջ է։ Հիմա ամբողջ քաղաքը ծածկված է շինարարական լաստակներով։

Առաջնորդի տուն-թանգարանի մոտից ուղիղ դեպի Քուռ գետը՝ դեպի նոր կառուցվող խոշոր կամուրջն է ձգվում Ստալինի անվան պողոտան, որն ամենալայնն է լինելու ոչ միայն Գորիում, այլև ամբողջ ռեսպուբլիկայում։ Պողոտայի կենտրոնում, այնտեղ, ուր նա հատում է Ճավճավաձեի անվան փողոցն ու կազմում լայն հրապարակ, անցյալ տարի վեր խոյացավ ընկեր Ստալինի հոյակապ մոնումենտը՝ 16 մետր բարձրությամբ։ Առաջնորդի բրոնզե քանդակը կանգնած է մուգ բազալտից կառուցված գեղազարդ պատվանդանի վրա։

Անցյալ տարի Գորիում գործարկվեց բամբակագործական խոշոր կոմբինատի առաջին հերթը, որը տարեկան 56 միլիոն մետր կտոր է տալիս Հայրենիքին։ Լիախվիի հարավային ափին հիմնադրվեց կոմբինատի աշխատողների բանվորական ավանը։

Գորին ունի համամիութենական հռչակ ստացած կոնսերվի գործարան, հացի, տարայի, շպալի և այլ գործարաններ։

Մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի քաղաքային Սովետը, Գորիի շեֆությունը վերցնելով, մշտական օգնություն է ցույց տալիս նրա տնտեսական ու կուլտուրական շինարարությանը։

### 3

Գորին դարձել է ժողովուրդների եղբայրության սիմվոլը։ Նրա բնակիչները նամակագրության ջերմ կապ են պահպանում Միության տասնյակ քաղաքների աշխատավորների հետ։

Սրտառուչ է Գորիի պիոներների և դպրոցականների նամակագրությունը մեծ Լենինի ծննդավայր Ուլյանովսկ քաղաքի պիոներների և դպրոցականների հետ։ Այդ նամակագրությունն սկսվեց գորեցի պատանիների նախաձեռնությամբ՝ հանճարեղ Լենինի ծննդյան 80-ամյակի նախօրեին։ Ահա թե ինչ են նրանք գրել իրենց նամակում.

«Սիրելի բարեկամներ. դուք ապրում եք այն քաղաքում, ուր ծնվել ու իր մանկական տարիներն է անցկացրել համաշխարհային

պրոլետարիատի առաջնորդ մեծ Լենինը։ Մենք ապրում ենք այն քաղաքում, ուր ծընվել և իր մանկական տարիներն է անցկացրել մեծ Լենինի հավատարիմ աշակերտ ու զինակից, Լենինի գործը շարունակող մեր հարազատ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը։

Եկեք բարեկամական նամակագրություն հաստատենք մեր ու ձեր միջև»։

Նամակը ջերմ արձագանք գտավ Ուլյանովսկում։ Երկու քաղաքների պիոներներն ու դպրոցականները կապվեցին սրտագին բարեկամությամբ։

Այժմ նվիրական տնակի մոտ, սովետական բազմազգ ժողովուրդների ներկայացուցիչներից բացի, եղբայրաբար իրար են հանդիպում հնդիկն ու կորեացին, չինացին ու բրազիլիացին, ֆրանսիացին ու ավստրալիացին, չեխն ու դանիացին։ Այցելուներն իրենց ջերմ, սրտաբուխ զգացմունքները շարադրում են տուն-թանգարանի տպավորությունների գրքում։

«Ես եկել եմ Գորի՝ ծանոթանալու Ստալինի մանկությանը։ Այդ մարդն ապրել ու ապրում է զարմանալի կյանքով։ Իր խելքի, սրտի ու բնավորության ուժով այդ մեծ ռևոլյուցիոները չտեսնված հրաշքներ է գործում։ Գուցե նրան այդ ուժը տվել են Վրաստանի սեգ լեռնե՞րը։ Պատանեկության տարիներին Ստալինը գրել է բանաստեղծություններ, սիրել պոեզիան... Ստալինի մեջ միաձուլվել են պոեզիան ու խիզախությունը»— գրել է հեռու Հնդկաստանից եկած բանաստեղծ, նշանավոր պրոգրեսիվ գործիչ Մուլկ Ռաջ Անանդը։

«Ոչ ոք աշխարհում մարդկության երջանկության համար այնքան գործ չի արել, որքան արել են երկու հանճարները՝ Լենինը և Ստալինը»— գրել է Բրազիլիայի պրոգրեսիվ բանաստեղծ Ժորժի Ամադուն։

«Երկրորդ անգամ այցելեցի այն վայրը, ուր բանվորի համեստ ընտանիքում ծնվել է մեր հայրը, բարեկամը, առաջնորդը։ Ստալինը փրկեց մեր Հայրենիքը գերմանաֆաշիստական հորդաներից։ Փա՜ռք նրան»— գրել է սովետական նշանավոր գրող Մարիետա Շահինյանը։

«Մեծ Ստալինի անունը կորեական ժողովրդի հույսն է, մեր հաղթանակների դրոշը», գրել են կորեական դելեգացիայի անդամները։

«Մեզ՝ երիտասարդ ամերիկացիներիս համար, խաղաղության համար պայքարող սպիտակամորթ ու սևամորթ բանվորներիս, ծառայողներիս, ուսանողներիս մեծ բախտ է վիճակվել՝ լինել ընկեր Ստալինի ծննդավայրում։ Ստալինի կյանքը ժողովրդին ծառայելու մի անզուգական օրինակ է»— գրում են ամերիկյան երիտասարդական դելեգացիայի անդամները։

Այսպես, տպավորությունների գրքում, աշխարհի հասարակ մարդիկ տարբեր լեզուներով, տարբեր խոսքերով սակայն երդվում են պայքարել Լենինի—Ստալինի գործի համար։

## ՆՈՐ ԿՏՈՒՐԻ ՏԱԿ

*ԱՐՉԻԼ ՍՈՒԼԱԿԱՈՒՐԻ*

Գարնան մի անուշ, խաղաղ իրիկուն,
Թառած մի բարձր հեռագրալարի՝
Ծիծեռնակները ուրախ ծլվլում,
Զրուցում էին, ձեն-ձենի տալիս։
Օտար կողմերից, հեռուներից խորթ
Հայրենիք դարձած սրտերով կարոտ՝
Ժիր ծլվլոցով, կանչերով գերող
Լցրել էին ողջ փողոցը ծանոթ։
— Ի՜նչ լավ է այստեղ,— ասաց մի ծիծառ,—
Ճի՛վ-ճի՛վ, կյանքն այստեղ գետ է բերկրանքի,
Ինչքա՜ն նոր շենքեր վեհաշուք, պայծառ,
Ինչքա՜ն ծառ ու թուփ, պարտեզ ու այգի։
Նայեցեք, ահա՛, քաղաքում, գյուղում
Քանդվում է հինը, նորն է բարձրանում,
Իսկ նա, ով բույն է շինել հին տեղում,
Հինը չգտած՝ նոր բույն է շինում։
Եվ դրա համար, եկեք որոշենք,
Որ ամեն տարի չթափենք էլ ջանք.
Սրանից հետո մեր բույնը շինենք
Միայն նոր շենքի նոր կտուրի տակ...

# ՆՈՐ ԹԲԻԼԻՍԻՆ

**ԳՐ. ԱԲԱՇԻՁԵ**

*(Ստալինյան մրցանակի լաուրեատ)*

Հին քաղաք է Թբիլիսին,
Բայց կոչում ենք նրան նոր,
Չէ՞ որ ծիծաղն երեսին
Բոյ է քաշում ամեն օր։
Քանի՜ փողոց, քանի՜ շենք,
Շքեղ պարտեզ ու այգի
Զարդն են դարձել նորաշեն
Մեր արևշող քաղաքի։
Ահա հոսում է հանդարտ
Քուռ գետը մեր հինավուրց,
Նրա մեջքին որպես զարդ՝
Երեք չքնաղ նոր կամուրջ։
Կամուրջի մոտ Մետեխի
Կանգ է առնում նա մի պահ,
Ուր պատվարն է նոր գէսի
Նշում լուսե ճանապարհ։
Ու բետոնե պատերին
Համբույր տալով սիրահորդ,
Անցնում է նա, մտերիմ,
Հավերժական մի ճամփորդ։
Նայի՛ր, որքա՜ն լավն է, վառ,
Մեր հարազատ Թբիլիսին,
Անում է նա խանդավառ,
Խնդուն ծիծաղն երեսին։
Մեր բարձրացող քաղաքի
Շինարարնե՛ր անձկուն,
Ձեր աննահանջ վերելքին
Բերել ենք մենք ջերմ ողջույն։

*Թարգմ. Հ. ԿԱՐԱՅԱՆ*



*Անդրերկաթուղու դպրոցականների գեղարվեստական դաստիարակության և տեխնիկական պրոպագանդայի տունը Թբիլիսիում։*



*Շոթա Ռուսթավելու արձանը Թբիլիսիի Ռուսթավելու անվան պողոտայում։*



*Վրացական ՍՍՌ Կառավարական տունը։*




ԼԻԴԻԱ ՄԵԳՐԵԼԻՁԵ

Նկ. Ս. ՊԻՊՈՅԱՆԻ

Զարաճճի տղա է Զուրիկոն։ Դպրոցում այնպես է պահում իրեն, կարծես թե ընկերների մեջ ամենից անմեղը լինի, իսկ երբ տուն է վերադառնում կրակ ու պատիժ է դառնում տնեցիների գլխին։

— Ի՞նչ է պատահել, Զուրիկո՛, բավական է չարություն անես, ժամանակն է, որ խելքի գաս, վաղը, մյուս օրը տասներկու տարեկան ես դառնալու,— մի անգամ դիմեց մայրը որդուն, որը պատուհանի մոտ նստած, մատներով անընդհատ թմբկահարում էր լուսամուտի գոգը, անհանգստացնելով թե՛ մորը, թե՛ հարևաններին։

Մթնում էր։ Բարակ մաղում էր ձյունը, ծածկում դուռն ու բակը։

Զուրիկոյի հայրը՝ Զումբերը դեռ չէր վերադարձել գործարանից։ «Գործարանում ժողով ունենք»,— զգուշացրել էր նա առավոտյան, աշխատանքի գնալուց առաջ։

Զուրիկոն մինչև այժմ չէր հետաքրքրվել հոր աշխատանքով, չէր եղել գործարանում և չէր տեսել, թե ինչ է անում այնտեղ իր հայրը։

Մի քանի օր է, ինչ դպրոցում պատրաստվում էին աշակերտներին տանել գործարան։ Եվ ահա որոշվել էր օրը՝ վաղը նրանք պետք է էքսկուրսիա գնային գործարան։

— Կիրովի անվան գործարա՞նն ենք գնալու, ընկե՛ր ուսուցիչ,— հարցրել էր Զուրիկոն այս առավոտ ուսուցչին։

— Այո, այնտեղ ենք գնում,— պատասխանել էր ուսուցիչը.— շատ հետաքրքիր գործարան է։

Զուրիկոն հենց վաղվա այդ էքսկուրսիայի մասին էր մտածում։ Երեխան անհարմար էր զգում, որ ուսուցիչն ու աշակերտները վաղը գործարանում կտեսնեին իր հորը՝ մրոտված հագուստով, հենց այնպես, ինչպես աշխատանքից հետո նա գալիս է տուն։

Զուրիկոն ուզում էր, որ իր ընկերները հոր հետ ծանոթանային կիրակի օրը, երբ նա, նոր կոստյումը հագին, Զուրիկոյի հետ զբոսնում է պողոտայով։ Այդ պահին հայրիկը նման չի բոլորովին հաստոցի մոտ աշխատող խառատին։

— Ո՛չ, վաղը չեմ գնա էքսկուրսիայի,— մտմտում էր Զուրիկոն,— իսկ եթե ես չգնամ, ապա ո՞վ կճանաչի հորս։

Զուրիկոյի կարծիքով հայրն իր արտահագուստով ու սևացած ձեռքերով անհարմար դրության մեջ կընկներ ուսուցչի և աշակերտների առաջ։

Հենց այդ մտքերի մեջ էր խորասուզված Զուրիկոն, երբ մայրը ձայն տվեց.

— Զուրիկո՛, գնա լողարանը պատրաստիր, ուր որ է հայրդ կգա։

Տղան դժգոհությամբ նայեց մորը և դանդաղորեն հեռացավ պատուհանից։ Նա չէր սիրում, երբ նրան հանձնարարում էին կրակ վառել ու տաքացնել լողարանը։

«Պետք է հայրիկին ասեմ, որ վաղը կոստյումով գնա գործարան։ Մի՞թե չի կարելի զգուշությամբ աշխատել։ Իհարկե, կարելի է»— մտածում էր Զուրիկոն լողարանում կրակը վառելիս։ Այս լողարանն էլ շատ է ձանձրացրել իրեն. ոչ էլ արտահագուստն է դուր գալիս, որ աշխատանքից հետո հայրը կախում է պատշգամբում։ Ա՛յ, նրան իսկական բավականություն է պատճառում, երբ լողանալուց հետո, հայրը մտնում է սենյակ մաքուր, շերտավոր պիժամով։

— Մայրի՛կ, եթե հայրիկը մի ուրիշ տեղ աշխատի՝ չի կարելի՞։

— Ո՞րտեղ պետք է աշխատի, որդի՛ս,— պատասխանեց զարմացած մայրը։— Քո

հայրը խառատ է, իսկ խառատը պետք է գործարանում աշխատի։

Զուրիկոն ամաչեց իր հարցից. լռեց։ «Չէ, ես այդպես չէի ուզում ասել,— մտածում էր նա ինքն իրեն,— իմ ցանկությունը միայն այն է, որ հայրիկս միշտ մաքուր, կոկիկ հագած լինի, այնպես, ինչպես մեր ուսուցիչը՝ ընկեր Դավիթը, կամ թե այնպես, ինչպես ինքը հագնված է լինում կիրակի օրերը, երբ մենք միասին գնում ենք կինո, կամ հորեղբայր Նիկոյի մոտ։ Եվ ձեռքերն էլ մի քիչ փափուկ լինեին, հայրիկիս ձեռքերը կոշտ են, մեղք է...»

Այդ պահին Զուրիկոյի հայրը բացեց դուռը և, թոթափելով վրայի ձյունը, ծիծաղեց.

— Մի ձյուն է գալիս, ո՜ր... Քաղաքն ամբողջ սպիտակել է։



***

Մյուս պիոներների հետ միասին Զուրիկոն էլ ավտոբուսով սլանում է ձյունածածկ փողոցով։ Որքան Զուրիկոն մոտենում է գործարանին, այնքան ավելի ուժգին է տրոփում նրա սիրտը։ Նա չի պատկերացնում, թե ինչպիսի պայմաններում կհանդիպի հորը, այն էլ այսքան տղաների ներկայությամբ։

Վերջապես, մեքենան կանգ առավ գործարանի դարբասի առջև։ Տղաները ուրախ ցատկոտեցին ավտոբուսից և ուսուցչի առաջնորդությամբ մտան գործարանի լայնարձակ բակը։ Աշակերտներից մի քանիսն իսկույն սկսեցին ուշադրությամբ արտագրել ցուցատախտակի վրա գրված տվյալները, նյութեր պատրաստելով զեկուցման և դպրոցի պատի թերթի համար, մյուսները արագ-արագ ուրվագծում էին գործարանի հոյակապ կորպուսները...

Ահա և ինժեներներից մեկը, որը էքսկուրսանտներին ուղեկցելու և ցույց է տալու գործարանի ցեխերը։

— Տղանե՛ր,— դիմեց նա աշակերտներին,— մեր գործարանն էլ է մասնակցում կոմունիզմի մեծ կառուցումների շինարարությանը։ Ուր ասես չեն ուղարկվում գործարանի պատրաստած հաստոցները՝ և՛ Վոլգա-Դոն, և՛ Գլխավոր Թուրքմենական ջրանցք, և մինչև անգամ Չինաստան։

— Չինաստա՞ն էլ,— զարմացած բացագանչեցին երեխաները։

— Այո, այնտեղ էլ։ Շատ տեղերից մենք ստանում ենք շնորհակալական նամակներ՝ հաստոցների լավ որակի համար։ Մի քանի օր առաջ մի այդպիսի նամակ էլ ստացանք հենց Չինաստանից,— ասաց ինժեները և անցավ առաջ, դեպի ցեխերը, հրավիրելով աշակերտներին հետևել իրեն։

Զուրիկոն գաղտագողի նայում էր այս ու այն կողմ, փնտրում հորը. բայց նա չէր երևում։ «Երևի մի տեղ են ուղարկել» — մտածեց փոքրիկը և կարծես թե մի քիչ հանգստացավ։

Երկար շրջելուց հետո էքսկուրսանտները մտան մի վիթխարի ցեխ։ Ուղեկցող ինժեները կանգ առավ հաստոցներից մեկի մոտ։ Երեխաները շրջապատեցին արագորեն պտտող մեքենան։ Նայեց Զուրիկոն հաստոցի մոտ աշխատող բանվորին և հանկարծակի շփոթվեց. դա իր հայրն էր։

Զումբերն էլ աշակերտների մեջ նկատեց իր որդուն։ «Զուրիկո՛, այդ դո՞ւ ես», ժպտա-

լով հեռվից ողջունեց նա որդուն և նորից բևեռեց իր հայացքը պտտվող մետաղե զանգվածին։ Նա կենտրոնացած, ուշադիր հետևում էր հաստոցի աշխատանքին, մերթընդմերթ մոտենում կողքի հաստոցին, կարգավորում նրա ընթացքը, կրկին վերադառնում առաջին հաստոցի մոտ։

— Վարպետ Ջոմբերը,— բարձրաձայն ասաց ինժեները,— սպասարկում է երկու հաստոց։ Նա արդեն կատարել է երեք տարվա նորմա և այժմ աշխատում է 1955 թվականի հաշվին։

Երեխաները հիացած նայում էին գործարանի անվանի խառատին։ Իսկ նա անվրդով, առաջվա պես լարված շարունակում էր իր աշխատանքը։

Ջերմորեն հրաժեշտ տալով, աշակերտները դուրս եկան ցեխից, իրենց հետ տանելով ծիածանի բոլոր գույներով պսպղացող մետաղե տաշեղներ, որոնք թափվում էին հաստոցի կտրիչի ծայրից։



Էքսկուրսիայից հետո Ջուրիկոն ուշ վերադարձավ տուն։ Հաստոցի մոտից վերցրած գեղեցիկ մետաղյա տաշեղը դրեց իր սեղանի վրա և գոհունակությամբ ժպտաց։

Ջուրիկոն այլևս չի մոռանա այն գործարանը, որտեղ աշխատում է հայրը։ Նա սիրով հիշեց այն պահը, թե ինչպիսի հիացմունք առաջ բերեց իր հայրը աշակերտների մեջ և ինչպիսի ջերմությամբ ուսուցիչը սեղմեց հոր ձեռքը հրաժեշտի ժամանակ։

Հնչեց ժամացույցի հարվածների ձայնը. ժամը վեցն էր։ Շուտով վերադառնալու էր հայրը։

— Մայրի՛կ, լողարանը տաքացնե՞մ,— հարցրեց Ջուրիկոն։

Որդու այդ ցանկությունը մեծ ուրախություն պատճառեց մորը։

Եկավ Ջոմբերը։ Հոգնած էր երևում։ Ջուրիկոն արագորեն պատրաստեց լողանալու պարագաները, պատշգամբում կախեց հոր արտահագուստը։

Խառատի որդին այսօր առաջին անգամ հասկացավ, թե Հայրենիքի հանդեպ ինչպիսի պատվավոր գործ է կատարում իր հայրը։ «Պողպատով և չուգունով է կոփվում մեր երկրի խաղաղությունը»,— հիշեց նա ուսուցչի խոսքերը։



Անկողին մտնելուց հետո Ջուրիկոն երկար մտածում էր, թե ինչպես կազմի իր օրվա ռեժիմը, ինչպես դասավորի ժամերը և այդ մտքերով տարված քնեց։

Առավոտյան նա, ամենից առաջ, արտագրեց օրվա ռեժիմը և փակցրեց իր սեղանի առջև, պատի վրա։

Ջուրիկոյի դպրոց գնալուց հետո մոր աչքով ընկավ տողայի կազմած աղյուսակը։ Նա գոհունակությամբ ժպտաց։ Օրվա ռեժիմի վերաբերյալ աղյուսակում մտցված էր մի նոր կետ.

«Ժամը 6-ին—տաքացնել լողարանը»։

Վրաց. թարգմ. Ս. ԲԱՐՍԵՂՅԱՆ

# Ամենասիրելի վայրը

Ռուսթավելու անվան պողոտայի վրա, երկնասլաց ծառերի մեջ թաղված է քաղաքի Լ. Պ. Բերիայի անվան պիոներների և դպրոցականների պալատի հոյակապ երկհարկանի շենքը։

Նա նման է մեղվանոցի։ Ամեն օր դասերից հետո, այստեղ ել ու մուտ են անում հազարավոր պիոներ-դպրոցականներ, որոնք պալատի 150 լուսավոր, հարուստ կահավորված սենյակներում, դահլիճներում, ուսումնասիրում են մեր Հայրենիքի նշանավոր գիտնականների, կոնստրուկտորների, գրողների, նկարիչների կյանքն ու փորձը, ձըգտում փոխարինել նրանց, դառնալ սովետական արժանավոր քաղաքացիներ։

Պալատի տասնյակ խմբակներում միջին թվով ընդգրկված են 8—9 հազար դպրոցական, որոնք սովորում են նկարչություն և քանդակագործություն, տիրապետում ռադիոյի գործը, մեխանիկան, դերասանական, երգի ու պարի արվեստը, ընթերցում պալատի հարուստ գրադարանի գրքերն ու ամսագրերը, որոնց քանակը 70.000-ից անցնում է։ Իսկ ամեն ամիս մասսայական միջոցառումներ են անցկացվում 12—15 հազար պիոներ-դպրոցականների, նրանց ծնողների համար։



Լ. Պ. Բերիայի անվան պիոներների պալատի քանդակագործական խմբակում։ Ջ. Ջափարիձեն քանդակում է Գեորգի Սաակաձեի կիսանդրին։

Լինել այնպիսին, ինչպես Լենինն էր, ինչպես Ստալինն էր. սա սովետական դպրոցականների միակ ձգտումն է, միակ երազանքը։ Դրա համար էլ նրանք մեծ սիրով և ուշադրությամբ են ուսումնասիրում հանճարեղ առաջնորդների կյանքն ու գործունեությունը, լինում պատմական այն վայրերում, որոնք կապված են սիրելի Ստալինի անվան հետ։ Ահա թե ինչու առաջնորդների կյանքն ու գործունեությունն արտացոլող կաբինետի հարուստ էքսպոնատներն ու գրականությունն ուսումնասիրելու, այնտեղ կազմակերպված մոտ 300 լեկցիաներն ու զրույցները լսելու համար միայն անցած տարվա վերջին չորս ամսում հաճախել են ավելի քան 13 հազար դպրոցական ու ծնող։ Այստեղ պիոներների հետ հանդիպում են ունեցել հին ռևոլյուցիոն բանվորները։ Օրինակ՝ Մ. Մաղրաձեն հանդիպման ժամանակ պատմեց, թե ընկեր Ստալինի հանձնարարությամբ ինչպես կառուցեցին Ավլաբարի նախկին ընդհատակյա տպարանը։ Նույն տպարանի գրաշար Տիգրան Վախտանգովը պատմեց, թե ինչպես էր տպագրվում «Պրոլետարիատի կռիվը» թերթը։

Այստեղ պիոներները հաճախ իրենք են զեկուցումներ կարդում սիրելի առաջնորդների մասին։ Թբիլիսիի 46-րդ իգական միջ-

նակարգ դպրոցի աշակերտուհի Ցիալա Նաբաշիձեի՝ «Ընկեր Ստալինի Բաքվի շրջանի ռևոլյուցիոն գործունեությունը» ռեֆերատը մեծ հետաքրքրությամբ լսվեց Վրաստանի դպրոցականների ուսումնական գիտա-տեխնիկական 8-րդ կոնֆերանսում։ Մինչ այդ, Ցիալան ուրիշ պիոներների հետ եղավ եղբայրական Ադրբեջանում, բոլշևիկյան կազմակերպությունների պատմության Ի. Վ. Ստալինի անվան թանգարանում, շատ նյութեր քաղեց, հաճախեց նախկին «Նինա» տպարանը, ուր 1901 թվականին ընկեր Ստալինի ղեկավարությամբ տպագրվում էր «Բրձոլա» թերթը։

Ընկեր Ստալինի Բաթումիի շրջանի ռևոլյուցիոն գործունեությանն էր նվիրված 7-րդ արական դպրոցի պիոներ Գ. Լորիայի ռեֆերատը։ «Ի. Ջուղաշվիլին — լավագույն ընկեր ու բարեկամ», «Լենինը Հոկտեմբերին» թեմաներով զեկուցումներ են կարդացել 24-րդ և 12-րդ իգական միջնակարգ դպրոցների աշակերտուհիներ՝ Ջ. Կասրաձեն և Ի. Քաջարիան։

Ութերորդ արական դպրոցի պիոներ Դ. Դաչեչիլաձեն, երբ առաջին անգամ ընդունվեց պիոներների ու դպրոցականների պալատի ռադիո-տեխնիկայի խմբակը, դեդեկտորային պարզ ընդունիչներ հազիվ էր կարողանում պատրաստել։ Շուտով նա դար-

### ԻՆՔՆՈՒՍ ՏԱՂԱՆԴՆԵՐԸ

Թբիլիսիի՝ Պլեխանովի անվան ակումբին կից գործող պատանեկան դրամատիկ խմբակը Ստալինի անվան շոգեքարշա-վագոնանորոգման գործարանի բանվորների համար ցուցադրեց «Երկու մանկություն — երկու աշխարհ» պիեսը, որի հեղինակը մայրաքաղաքի 45-րդ իգական միջնակարգ դպրոցի աշակերտուհի Մ. Խիդիրբեգիշվիլին է։

Պիեսում պատկերված են սովետական երեխաների երջանիկ կյանքն ու լուսաշող ապագան և Ամերիկայում տիրող այն ծանր, սպանիչ կարգերը, որոնց պատճառով կյանքից ու արևից զրկված են աշխատավորների երեխաները։ Պատանի հանդիսատեսը ատելությամբ է լցվում, հուզվում դիտելով պիեսի այն տեսարանները, որտեղ պատկերված է, թե ինչպես Թոմը և Լուիզան փողոց են նետվում, կործանվում, կարոտ մի պատառ հացի ու լավ օրվա։

Պիեսի բոլոր դերակատարները դպրոցականներ են, պատանի ինքնուս տաղանդներ, որոնք նույնպիսի հաջողությամբ բեմադրեցին Ա. Ծերեթելու «Պատարա կախի» պիեսը։ Նրանք այժմ պատրաստում են մի նոր բեմադրություն՝ Ստալինյան մրցանակի լաուրեատ Ս. Միխալկովի «Կարմիր վզկապը»։



Թբիլիսիի Լ. Պ. Բերիայի անվան ռայոնի մանկական տեխնիկական կայանի մի խումբ ավիոմոդելիստներ Թուսթավիի պլաներոդրոմում։



Թբիլիսիի պատանի տեխնիկների կենտրոնական կայանում. կոնստրուկտորական սեկցիան հերթական պարապմունքի ժամանակ։

ձավ ռադիո գործի լավագույն գիտակը խըմբակում։ Այժմ նրա պատրաստած ապարատով ամեն օր ցուցադրվում են դիապոզիտիվներ։

Վեցերորդ դպրոցի աշակերտ Լ. Ջափարիձեն երբեք չի մոռանա այն օրը, երբ մասնակցելով պատանի մոդելիստների համաքաղաքային մրցություններին, շահեց առաջին տեղը։

Այդպիսի մոդելիստների թիվը քիչ չէ պիոներների պալատում, որոնք, մասնակցելով պատանի մոդելիստների ռեսպուբլիկական և համամիութենական մրցություններին, երեք տարում ստացել են 28 գովասանագիր և շատ նվերներ։ Իսկ նույն դպրոցի պիոներ Հ. Գերգեուլին որոշել է անպայման դառնալ տրանսպորտի ինժեներ, ուստի զարմանալի չէ, որ նա այնքա՜ն սիրով էր պատրաստել իր՝ «Մոսկվայի մետրոն» զեկուցումը, մետրոյի նկարն ու սխեման։

Պիոներների կողմից մեծ սեր ու հետաքրքրություն է նկատվում դեպի ֆոտոն ու նկարչությունը։ Երբ պալատի դիրեկցիան հայտարարեց «Պիոներական ամառ» թեմայով կոնկուրս, պիոներական ճամբարներում, հանգստյան տներում կազդուրվող ու հանգըստացող պատանիները նկարեցին և ներկայացրին ավելի քան 600 ֆոտոնկար։ Դրանցով կազմակերպվեց հատուկ ցուցահանդես։

Պիոներական պալատը կարող է հպարտանալ իր աճեցրած շատ սաներով։ Պատանի քանդակագործ Ջ. Ջափարիձեն (11-րդ արական դպրոց) իր պատրաստած «Ընկեր Ստալինը սեմինարիայի տարիներին» հիանալի քանդակի համար պատանի քանդակագործների Համամիութենական վեցերորդ ցուցահանդեսում արժանացավ առաջին մրցանակի։ Անցած տարվա ամառը նա պատրաստեց «Պիոներուհին» քանդակը, չորս մետր բարձրությամբ։

Ավելի քան 600 պիոներ-դպրոցական է ընդգրկված պալատի սիմֆոնիկ նվագախըմբի, ասմունքի, տիկնիկային, ժողովրդական գործիքների, կենդանագրության և նկարչության խմբակներում։ Միայն Վրացական ՍՍՌ ժողովրդական արտիստ Ս. Զաքարիձեի ղեկավարությամբ գործող երկու դրամատիկական խմբակներում ընդգրկված են մոտ 100 պիոներ։

Պիոներների ու դպրոցականների կոմունիստական դաստիարակության գործը միայն պալատի շրջանակներով չի սահմանափակվում։

Անցած տարվա վերջերին կազմակերպվեց դպրոցականների ուսումնական գիտատեխնիկական 8-րդ կոնֆերանսը, ուր ռեսպուբլիկայի բոլոր շրջաններից 130 պիոներ-դպրոցականներ կարդացին զեկուցումներ՝ տարբեր հարցերի շուրջը։

Եվ այսպես, ամեն օր, ով լինում է Լ. Պ. Բերիայի անվան պիոներների պալատում, խորապես զգում է, տեսնում, թե Լենինի—Ստալինի պարտիան որքան ջերմ սիրով է շրջապատել կոմունիզմի ապագա կառուցողներին՝ մեր մատաղ սերնդին, որքան վառ ու պայծառ է նրանց այսօրն ու ապագան։




# ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

*Գալիի շրջանի Օքումի գյուղի Լենինի անվան միլիոնատեր կոլտնտեսությունը Վրաստանում և ամբողջ Սովետական Միության մեջ մեծ հռչակ է վայելում իր աճեցրած թեյի և արևադարձային բույսերի առատ բերքով, կուլտուրական, լիառատ կյանքով։ Այստեղ աճեցին և մեր ամբողջ երկրում հայտնի դարձան կոլտնտեսային աշխատանքի շատ վարպետներ։ Օքումիում աճել է նաև պիոներների և դպրոցականների մի հրաշալի սերունդ...*

*Գյուղի ծայրին, կանաչազարդ վայրում, բարձրանում է երկու հարկանի վարդագույն մի շենք. դա Օքումիի միջնակարգ դպրոցի նորակառույց շենքն է։ Այդտեղ սովորում, գիտելիքներ են ձեռք բերում մեր Հայրենիքի ապագա կառուցողները՝ հարյուրավոր պատանիներ ու աղջիկներ։*

*Դպրոցի պիոներական դրուժինայում 210 պիոներ կա։ Պիոներների մեծ մասը, լավ սովորելուն զուգընթաց, աշխատում է պատանի միչուրինականների, տեխնիկների, գրականություն ուսումնասիրողների, ձեռարվեստի խմբակներում։ Նրանք դասերից հետո, ազատ ժամերին, դպրոցին կից փորձադաշտում սերմեր են ցանում, բույսեր աճեցնում, տնկիների նոր տեսակներ պատվաստում, ճանապարհորդություններ են կատարում հայրենի գյուղի շրջակայքում, զբաղվում սպորտով։ Նրանց առաջ բաց է Օքումիի կոլտնտեսության ստադիոնը։ Սպորտային դաշխճում նրանք մասնակցում են մրցություններին։ Օքումիի պիոներներն ընթացիկ տարում առաջնություն շահեցին սպորտայինների շրջանային սպարտակիադայում։ Նրանք իրենց պիոներական ջոկատները կո-*

**ՊԱՏԱՆԻ ՄԻՉՈՒՐԻՆԱԿԱՆՆԵՐԸ**

Թբիլիսիի երկաթուղային 8-րդ իգական միջնակարգ դպրոցի պատանի միչուրինականներն ունեն հատուկ փորձադաշտ, ուր աճեցնում են բանջարա-բոստանային և այլ կուլտուրաներ:

Բույսերի աճեցման համար պարարտանյութերի նշանակությունը ցույց տալու նպատակով դպրոցի 6-րդ դասարանի աշակերտուհիներ՝ Դ. Առաքելյանը և Ն. Գվարամաձեն, բիոլոգիայի դասատու Լ. Ջիձիգուրիի ղեկավարությամբ, տարբեր հողամասերում աճեցրին սպիտակ դդում: Հողամասերից մեկը սնուցեցին հանքային պարարտանյութով, իսկ մյուսը թողեցին առանց պարարտացման: Աշնանը առաջին հողամասից ստացված դդումների քաշը 15—16 կիլոգրամից ավելի էր, իսկ երկրորդ հողամասից ստացածներինը 3—4 կիլոգրամից չէր անցնում: Մի շարք փորձերից հետո աշակերտուհիներ՝ Ն. Ջիքովանուն և Ա. Ախալկացուն հաջողվեց կարտոֆիլի ցողունի վրա պատվաստել պոմիդոր: Այդպիսով նրանք միևնույն թփից ստացան և՛ կարտոֆիլ, և՛ պոմիդոր:



*Օքումիի դպրոցի 4-րդ դասարանի աշակերտուհի Ն. Բուլիսկերիան ամառային արձակուրդների ժամանակ 1500 կիլոգրամից ավելի թեյատերև հավաքեց։*







Պիոներները թեյի պլանտացիաներում։

չել են Օլեգ Կոշևոյի, Պավլիկ Մորոզովի, իրենց հայրենակիցների՝ Ստալինյան մրցանակի լաուրեատ Զոքոլի Քվաչախիայի և Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Նաթելլա Բաղիսկերիայի անուններով։ Նրանք հաճախ են հանդիպումներ կազմակերպում իրենց կոլտնտեսության Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների հետ, լսում նրանց զրույցներն ու խորհուրդները, ձգտում նրանց նման առաջավոր, անվանի մարդիկ դառնալ։

Օքումիի պիոներներն ամռան արձակուրդների ընթացքում օգնում են իրենց կոլտնտեսությանը։ Բերքահավաքի եռուն շրջանում այդ պատանիները 20 հազար կիլոգրամ թեյատերև հավաքեցին դաշտերից և օգնեցին առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու գործում։

Օքումցիները հպարտ են, որ դաստիարակում են Լենինի—Ստալինի մեծ գործին նվիրված, սոցիալիստական շինարարության գործին հավատարիմ պատանիներ ու աղջիկներ։

Մ. ԼԵՐԱՆԻՁԵ



Օքումիի լրիվ միջնակարգ դպրոցի նոր շենքը։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆԻՆ

ԳՈՒՐԳԵՆ ԲՈՐՅԱՆ

Երկու գետեր՝ Արաքս և Քուռ,
Ինչպես երկու անբաժան քույր,
Հոսել են հաշտ դար ու դարեր,
Փարված, գրկված մի կյանք դառնել:

Երկու լեռներ՝ Կազբեկն հպարտ
Եվ բարձրագահ սարն Արարատ
Միշտ ձայնել են հեռվից իրար,
Ինչպես երկու հսկա եղբայր:

Այդպես հավերժ՝ դար ու դարեր...
Բայց այն, ինչ որ Այսօրն է մեր,
Սովետական մեր աշխարհում,
Չի՛ եղել դեռ ոչ մի դարում:

Ծաղկել, բացվել, զուգվել է մեր
Վրաստանը արևաբեր,
Կապած Քռի գոտին արծաթ,
Կազբեկից էլ բարձր ու հպարտ:

Ե՛վ նոր լույսեր, և՛ նոր հույսեր,
Երջանկություն, բարիք ու սեր,
Գործով արդար, ձայնով հզոր,
Նոր կյանքով է լեցուն այսօր:

Ե՛վ Կոլխիդան, և՛ Ռուսթավին,
Ե՛վ հովիտը Ալազանի.
Շողում է վառ ծովում լույսի՝
Լուսապսակ Թբիլիսին:

Բռնած կյանքի ուղին այդ մեծ,
Վրաստանը արևամերձ,
Աչքերում՝ լույս, սրտում՝ գարուն
Կոմունիզմի ափն է գնում:

Իսկ սերը մեր երկու ազգի,
Սովետական ընտանիքի,
Կազբեկից էլ բարձր է, հզոր,
Արաքսից էլ հորդ է այսօր:

Վրաստանին արևավոր,
Հայաստանից ծաղկուն ու նոր,
Խոսքով անկեղծ, երգով ջերմուն
Հազա՜ր բարև, հազա՜ր ողջույն:

# ՊԱՏԱՆԻ ՀԱՆԴԻՍԱՏԵՍԻ ԹԱՏՐՈՆՆԵՐՈՒՄ

*Սովետական Վրաստանում, կուլտուրայի, սպորտի, գեղարվեստական ինքնագործունեության շատ օջախներից բացի, գործում են մանկա-պատանեկան թատրոնները, որոնց բեմադրություններն ամեն օր դիտում են հազարավոր դպրոցականներ: Միայն Թբիլիսիում գործում են պատանի հանդիսատեսի վրացական և Լ. Մ. Կազանովիչի անվան ռուսական թատրոնները, տիկնիկային երկու թատրոն:*

*Պատանի հանդիսատեսի վրացական թատրոնը տվել է սովետական երջանիկ դպրոցականների կյանքն արտացոլող շատ բեմադրություններ: Դրանք ջերմորեն են ընդունել պատանի հանդիսատեսները: Միայն անցած տարի թատրոնի կոլեկտիվը բեմադրել է Վ. Դարասելիի «Կիկվիձե», Գ. Նախուցրիշվիլու և Վ. Գամրեկելիի «Լադո Կեցխովելի», Ս. Միխալկովի «Ես տուն եմ ուզում» և այլ պիեսներ:*

*Այդ թատրոնում են աշխատում երեխաների կոմունիստական դաստիարակության գործին նվիրված ռեսպուբլիկայի արվեստի վաստակավոր գործիչ, ռեժիսոր Գ. Ժուրուլին, վաստակավոր արտիստներ՝ Գ. Կուպրաշվիլին, Թ. Տվիլիաշվիլին, Ն. Սիրբիլաձեն և ուրիշներ:*

*Ռուսական թատրոնը, որի քսանհինգամյակը լրացավ այս տարի, բեմադրեց սովետական դրամատուրգների և կլասիկ գրողների այնպիսի գործեր, ինչպիսիք են «Ընտանիքը», «Գաստելլոն», «Հասունության վկայականը», ռուս մեծ դրամատուրգ Օստրովսկու «Ամպրոպը»:*

*Վրաց և հայ ժողովուրդների բարեկամության շատ օրինակներից մեկն էլ այն է, որ վրացական թատրոնի բեմից հնչում է հայ մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանի խոսքը: Նրա հանրահայտ «Գիքոր» պատմվածքի հիման վրա գրվել է պիես, որը ջերմորեն է ընդունվում պատանի հանդիսատեսի կողմից:*

# ՄԵԾ ԳՐՈՂԸ

Մ. ԱՐԱԶԻ



Այս տարվա հունիսի 18-ին լրացավ ռուս մեծ գրող, սովետական գրականության հիմնադիր Մաքսիմ Գորկու (Ալեքսեյ Մաքսիմովիչ Պեշկովի) մահվան 17 տարին։ Նա ծնվել է 1868 թվականին, Նիժնի-Նովգորոդ (այժմ Գորկի) քաղաքում։

Գորկին շատ վաղ զրկվեց հորից և ապրում էր պապի մոտ։ Փոքրիկ Ալյոշայի համար ծանր էր այդ կյանքը բռնակալ պապի տանը. բայց նրան շատ էր օգնում բարի և խելոք տատը։ Նրա բազմաթիվ հեքիաթները խորը տպավորություն էին թողնում թոռան վրա։

Ալյոշան ընդունվեց դպրոց, բայց նրա ուսումը կարճ տևեց. երբ պապը սնանկացավ, տասնմեկ տարեկան Ալյոշան ստիպված աշխատանքի մտավ։ Նա սկզբում կոշկակարի խանութում աշակերտ էր, ապա գծագրողի օգնական՝ շինարար կապալառուի տանը։ Բայց նա այնտեղ ոչ թե կատարում էր իր պաշտոնը, այլ աշխատում էր ծառայի փոխարեն։ Շուտով Ալյոշան փախչում է տիրոջ մոտից և միանում Վոլգայի ափի բեռնակիրներին։ Այնուհետև նա ընդունվում է ծառայության շոգենավի վրա, որպես ամաններ լվացող։ Այդտեղ նա բարեկամանում է մի մարդու՝ խոհարար Ամուսու հետ։ Վերջինս մի մեծ սնդուկ գրքեր ուներ և կարդալ շատ էր սիրում։ Ծանր աշխատանքից հետո, ազատ ժամերին նա պատվիրում էր Գորկուն կարդալ, իսկ ինքը լսում էր։ Դա օգնում էր Ալյոշային, ուսման կիսատը լրացնելու։ Մի քանի ուրիշ պաշտոններ փոխելուց հետո, 1884 թվականին Գորկին գնում է Կազան քաղաքը՝ համալսարան մտնելու, բայց չի հաջողվում։ Դրանից հետո նա Վոլգայի նավահանգստում դառնում է բեռնակիր, ապա հացագործարանում՝ բանվոր։

Կազանում Գորկին ծանոթացավ առաջավոր մարդկանց՝ ռևոլյուցիոներների հետ, կարդաց Մարքսի և նշանավոր գրողների՝ Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի գրքերը։

1889 թվականին Գորկին նորից գնաց Նիժնի-Նովգորոդ։ Նա դարձյալ ռևոլյուցիոն գործիչների շրջանում էր։ Երկու տարուց հետո, սկսեց ճամփորդել Ռուսաստանում և հասավ մինչև Թիֆլիս։ Այնտեղ երկաթուղային արհեստանոցում աշխատելիս՝ ծանոթացավ աքսորական ռևոլյուցիոներների հետ։ Դրանց մեջ էր և Կալյուժնին։ Վերջինիս խորհրդով Գորկին 1892 թվականին «Կավկազ» լրագրում տպագրեց իր առաջին պատմվածքը՝ «Մակար Չուդրան»։

Վերադառնալով հայրենի քաղաքը նա սկսեց աշխատակցել լրագրերին և ամսագրերին։ 1898 թվականին լույս տեսավ նրա պատմվածքների ժողովածուն։ Շատ չանցած Գորկին շատ հայտնի ու սիրելի գրող դարձավ։ Նրա նշանավոր գործերն են՝ «Մայրը», «Կլիմ Սամգինի կյանքը», «Արտամոնովների գործը», «Եգոր Բուլիչովը և ուրիշները», «Հատակում», «Թշնամիները» և այլն։

Մաքսիմ Գորկին ակտիվ կերպով մասնակցում էր Ռուսաստանի ռևոլյուցիոն շարժմանը։ 1889 թվականից սկսած, նա մի քանի անգամ բանտարկվել է ցարական կառավարության կողմից։ 1905 թվականի ռևոլյուցիայի օրերին, ցարի դեմ գրած թռուցիկի

պատճառով, Գորկուն բանտարկեցին Պետրոպավլովսկի բերդում։ Ռուսաստանի և Եվրոպայի բանվորները բողոքեցին այդ դաժանության դեմ. ցարական կառավարությունը ստիպված՝ Գորկուն ազատ արձակեց։ 1906 թվականին Գորկին մեկնեց արտասահման և կարողացավ վերադառնալ միայն 1913 թվականին։

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի հենց առաջին օրերից Գորկին իր ամբողջ եռանդը նվիրեց սովետական գրականության և կուլտուրայի զարգացման գործին։ 1921 թվականին, հիվանդության պատճառով, նա նորից մեկնեց արտասահման և այնտեղ մնաց մինչև 1928 թվականը։

Գորկին մեծ առաջնորդներ՝ Լենինի և Ստալինի մոտիկ բարեկամն էր։ Կյանքի վերջին տարիներին նա իր բազմաթիվ հոդվածներով պայքար էր մղում ֆաշիստների դեմ։ Ժողովրդի թշնամիները 1936 թվականին սպանեցին նրան։

Մեծ է Մաքսիմ Գորկու նշանակությունը ոչ միայն ռուսական, այլև ամբողջ աշխարհի գրականության համար։ Նրա գրվածքները թարգմանված են շատ և շատ լեզուներով։ Գորկին իր բազմաթիվ պատմվածքներում, վեպերում, պիեսներում ճշմարտացի կերպով նկարագրում է անցյալի դաժան կյանքը, բողոքում է անարդարության, տիրողների և շահագործման դեմ։ Նա պայքարի, ռևոլյուցիայի է կոչում բանվորներին ցարական կառավարության և կապիտալիստների դեմ։ Գորկին պայքարում էր բոլոր մարդկանց ազատագրության, կոմունիստական ապագայի համար։ Նա ամբողջ առաջավոր մարդկության բարեկամն է։

## ԵՐԿՈՒ ԱՇԽԱՐՀ, ԵՐԿՈՒ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ

Հունիսի մեկը երեխաների պաշտպանության միջազգային օրն է։ Այդ օրը նշում են ամբողջ աշխարհի առաջավոր մարդիկ։ Նրանք գիտեն, որ իմպերիալիստների կողմից հրահրվող պատերազմները կբերեն անհուն տառապանքներ հատկապես երեխաներին։ Դրա համար էլ նրանք պայքարում են խաղաղության համար, մարդկության գարնան՝ աշխարհի ապագան կառուցողների կյանքը է՛լ ավելի լավացնելու համար։

Այն երկրներում, որտեղ իշխանությունը կապիտալիստների ձեռքին է, կառավարությունները մտածում են միայն ժողովրդին շահագործելու և պատերազմի մասին։ Կապիտալիստները հսկայական միջոցներ են ծախսում սպառազինվելու և լրտեսության համար։ Աշխատավորներն ու նրանց երեխաներն այդ երկրներում դատապարտված են սովի և կործանման։ Նրանց մեծագույն մասը չի կարող սովորել, որովհետև միջոցներ չունի։

Իտալական քաղաքի փողոցներում փոքրիկ իտալացին սրբում է ամերիկացի զինվորականի կոշիկները։ Այն կոպեկներով, որ շպրտում է նրանց ամբարտավան և ինքնակոչ ամերիկացի տերը երեխայի կատարած ծանր աշխատանքի համար, համարյա ոչինչ չի կարելի գնել։ Ֆրանսիական գաղութ Թունիսում երեխաները պատառոտված շորերով, ոտաբոբիկ, քաղցած քարշ են գալիս փողոցներում։ Նրանք ողորմություն են խնդրում կամ հավաքվում աղբարկղների շուրջը որևէ ուտելիքի մնացորդ գտնելու հույսով։ Ամերիկյան իմպերիալիստների կրնկի տակ հեծող Թյուրքիայում երեխաների համար դպրոցների փոխարեն կառուցվում են բանտեր և մանկական ուղղիչ տներ։

Կապիտալիստական երկրների շատ երեխաներ պատերազմի ժամանակ գերմանական ֆաշիստների կողմից քշվեցին դեպի Գերմանիա։ Շատ երեխաներ մինչև այժմ չեն վերադարձել իրենց հարազատ ընտանիքների գիրկը։ Նրանք տանջվում են Արևմտյան Գերմանիայի շատ մանկատներում։ «Եվրոպական երեխաների մասին հոգ տանող կոմիտե» կազմակերպության ղեկավարները երեխաներին գաղտնի ուղարկում են Կանադա, Ավստրալիա, Հարավային Ամերիկա և այնտեղ վաճառում։ Այդ փոքրիկ ստրուկները գիշեր-ցերեկ աշխատում են գործարաններում և ֆերմաներում։ Ծանր աշխատանքից, վատ սննդից, գազանային վերաբերմունքից երեխաները հազարներով մեռնում են։



Հռոմում, Միլանում և իտալական այլ քաղաքներում սովորական են լինում մուրացկան երեխաներ: ՆԿԱՐՈՒՄ՝ Նեապոլի փողոցում աղջիկը ողորմություն է խնդրում անցորդներից:

Երեխաների վաճառքը շատ է տարածված հատկապես Յապոնիայում: Այնտեղ աղքատ ծնողները ծայր աստիճան կարիքից և հուսահատությունից դրդված վաճառում են իրենց երեխաներին, որպեսզի չտեսնեն, թե ինչպես են նրանք սովից մեռնում:

Ամերիկայի Միացյալ Նահանգներում աշխատում են երեք ու կես միլիոնից ավելի երեխա: Նրանց աշխատանքային օրը 12 ժամ է տևում: Մեծ թվով երեխաներ տառապում են զանազան խրոնիկական հիվանդություններով. երեք միլիոն դպրոցական ներվային հիվանդներ են. վեց միլիոն երեխա 1951 թվականին դպրոց չէին գնում: Ավելի վատ է նեգրերի դրությունն Ամերիկայում և մյուս երկրներում:

Վերջերս ամերիկյան Պոնտիակի քաղաքի մի փողոցով գնում էր իննամյա նեգր Ջեյմս Դուգլաս Բրաունը: Նրա դիմացից դուրս եկան երկու ոստիկան, որոնք զորացրվել էին ամերիկյան ծովային հետևակից: Հանկարծ կրակոց լսվեց: Նեգր տղան արյունաշաղախ ընկավ գետնին. նրան խփեցին ոստիկանները: Անցորդներից մեկը հետաքրքրվեց, թե ինչ մեղք ուներ փոքրիկ նեգրը: Ոստիկանները քմծիծաղով պատասխանեցին.

— Մենք նրան մեծահասակի տեղ ընդունեցինք, և մեզ թվաց, թե նա պատրաստվում է խանութը կողոպտելու:

Անցորդները ցրվեցին. մեռած տղային տարան, իսկ մարդասպան ոստիկանները անպատիժ շարունակեցին իրենց ճանապարհը: Չէ՞ որ Ամերիկայում նեգրերին սպանելը հանցագործություն չի համարվում...

Միանգամայն այլ է երեխաների դրությունը մեր Հայրենիքում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, որտեղ իշխանության տերը ժողովուրդն է: Կառավարությունն անդադար հոգ է տանում երեխաների մասին:

Ուրախ է սովետական երեխաների առօրյան և լեցուն հետաքրքիր գործերով: Նը-




Յապոնիա. գործազրկության և աղքատության պատճառով շատ քաղաքացիներ իրենց նորածին երեխաներին գցում են փողոց: ՆԿԱՐՈՒՄ՝ Տոկիոյի Ուենո պարկում գցված մի երեխա:

բանք գնում են դպրոց, ամառը հանգստանում անտառների, լեռների և բնության գրկում:

«Մեր ծնողները զոհվել են, մարտնչելով Հայրենիքի համար: Բելոռուս աղջիկ՝ Ադա Ստանկևիչի հայրը եղել է պարտիզան: Ֆաշիստները բռնեցին նրան և Ադայի ու նրա փոքրիկ եղբոր աչքերի առաջ սպանեցին:

Հայրենիքը չի մոռացել մեր հայրերի քաջագործությունները: Մենք զգում ենք նրա փաղաքշանքը և հոգատարությունը: Ապրում ենք գեղեցիկ մանկատանը: Մեզ մոտ կա ամեն ինչ, որպեսզի մենք կարողանանք լավ սովորել», — գրում են Մոսկվայի մարզի Պուշկինո քաղաքի «Երիտասարդ բանվոր» մանկատան մի խումբ սաներ:

Երջանիկ են ապրում ժողովրդական Չինաստանի երեխաները: Շանհայ քաղաքի առաջին դրուժինայի երրորդ օղակի պիոներները գրում են. «Ամենից շատ մենք սիրում ենք պատմվածքներ մեր սովետական եղբայրների մասին»: Նրանց ոգևորում է այն բոլորը, որ ստեղծված են սովետական երեխաների համար՝ մանկական երկաթուղիները, պիոներների պալատները, ամառային պիոներական ճամբարները, լուսավոր և գեղեցիկ դպրոցները: Նրանցից ամեն մեկը գիտի, որ իրենց մոտ և իրենց համար էլ շուտով կլինի այն ամենը, ինչ որ կա սովետական երեխաների համար:

Սովետական Բանակն ազատություն բերեց Արևելյան Եվրոպայի երկրների ժողովուրդներին: Այժմ մեծերի հետ միասին ուրախ ու երջանիկ կյանքով են ապրում Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Ալբանիայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի երեխաները:

Ամերիկյան ավիացիան կատաղի կերպով ռմբակոծում և կործանում է կորեական քաղաքներն ու գյուղերը, սպանում ծերերին, կանանց և երեխաներին: Չնայած դրան, նույնիսկ պատերազմի պայմաններում, ժողովրդական կառավարությունը հոգ է տանում երեխաների մասին. գործում են դպրոցները, մանկական հիմնարկները...

Ուրախ ու երջանիկ է մանկությունը մեզանում: Էլ ավելի ուրախ ու երջանիկ կլինի ապագայում: Դրա համար են պայքարում սովետական ժողովուրդները, դրա համար են պայքարում խաղաղության միլիոնավոր կողմնակիցներն աշխարհում:



Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայի պիոներական դելեգացիան Լենինգրադում: ՆԿԱՐՈՒՄ՝ հյուրերը «Ավրորա» նավի վրա:




Չեխոսլովակիայի դպրոցներից մեկում: Աշակերտները ուսուցչուհու ղեկավարությամբ կատարում են տնային աշխատանքները:



Սինիյչժու քաղաքը (Կորեա) համարյա ամբողջովին ավերված է ամերիկյան ավիացիայի ռմբակոծությունից: Բայց չեն դադարում պարապմունքները դպրոցներում: ՆԿԱՐՈՒՄ՝ Սինիյչժու քաղաքի դպրոցականները ուսուցչուհու հետ դուրս են եկել զբոսանքի: (ՖՈՏՈԽՐՈՆԻԿԱ ՏԱՍՍ)



# ՄԻ ՀՆԴԻԿ ՄԱՆԿԱՆ

*Ժ. ԱՎԵՏԻՍՅԱՆ*

*Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ*

1

Աչիկներով սև սաթի,
Վարսերով գանգուր
Փոքրիկ աղջիկ իմ հնդիկ,
Իմ աննման քույր:
Նստել ես դու Գանգեսի
Դալարուն ափին,
Աչքդ հառել հյուսիսի
Հեռավոր ճամփին:
Սպասում ես անդադար
Աչիկներով թաց՝
Ե՞րբ կուղարկեն քեզ համար
Կամ բրինձ, կամ հաց:

Աստղերի տակ բորբ, լուսավառ,
Պայծառ սրտում ողջ աշխարհի
Աշխատում էր ջերմ, հոգատար
Իմաստունը մեր մեծ դարի:
Ծխամորճի ծուխը թեթև
Ելնում էր բիլ քուլաներով,
Իսկ սեղանին՝ թղթեր, թղթեր
Բոլոր, բոլոր լեզուներով:
Ու նրանց մեջ՝ կապույտ ծրար
Հնդկաստանից հեռու-հեռու.
«Մեր թանկագին հարազատ հայր,
Մեր բարեկա՛մ, Ձեզ ենք գրում:
Մանուկները մեր սիրելի
Տառապում են հիվանդ, քաղցած,
Մեր սովահար մանուկներին
Ուղարկեցեք բրինձ կամ հաց»:

2

Աչիկներով սև սաթի,
Վարսերով գանգուր
Փոքրիկ աղջիկ իմ հնդիկ,
Իմ աննման քույր:
Տե՛ս, հեռավոր հյուսիսից
Նավերը հսկա
Ելել են, որ Գանգեսի
Ջինջ ափերը գան.
Գան ու բերեն քեզ համար
Թե՛ բրինձ, թե՛ հաց,
Ու սրբեն քո սովահար
Աչիկները թաց:

Եվ հնդկական հեռու գյուղում,
Արդեն վաղուց-վաղուց հանգած
Օջախներն են նորից ծխում,
Եփում բրինձ ու թխում հաց:
Նրանց շուրջը՝ մանուկների
Սևագանգուր խմբերն ուրախ,
Խինդի երգը շրթունքներին,
Աչիկներով արցունքաշաղ:
Իսկ ծերերը դողդոջ, տկար,
Աչքերն հեռու հյուսիս հառած,
Խոսում են ջերմ երկար-երկար
Իրար խառնած ծիծաղ ու լաց:

3

Աչիկներով սև սաթի,
Վարսերով գանգուր
Փոքրիկ աղջիկ իմ հնդիկ,
Իմ աննման քույր.
Ասում են, թե քո կրծքին,
Խեցե պատյանում,
Մի նկար ես թանկագին
Պահում, պահպանում:
Ու նրա տակ՝ քո սրտում
Հար պիտի ապրի
Հոգատար ու իմաստուն
Հայրը աշխարհի...

Փոքրիկ աղջիկ իմ հնդիկ,
Իմ անմահ քույր:
Նստել ես լուռ ու տրտում
Երգը մոռացած,
Փոքրիկ-փոքրիկ քո սրտում
Վիշտը ծառացավ:
Բայց երազը քո մաքուր
Դու մի՛ մոռանա,
Մեծ Ստալինն ամենուր
Հավետ կմնա:



4

Առավոտն էր բացվում շողուն
Ցրում մեգը լայն դաշտերի,
Եվ հնդկական փոքրիկ գյուղում
Ծուխն էր ելնում օջախների:
Կապտակոհակ գետի ափին
Ծաղիկների ցողն էր փայլում,
Գյուղի ոլոր-մոլոր ճամփով
Մի ճամփորդ էր մենակ քայլում:
Մոտեցավ նա տխուր, մռայլ,
Երկու կաթիլ սև աչքերին,
Շուրջն հավաքեց բոնզափայլ
Խմբերը լուռ հնդիկների:
Գյուղամիջին՝ նորաքողքոջ
Մի ծառի տակ կանգնեց սառած,
Ապա գուժեց ձայնով դողդոջ
— Ստալինը... Երեկ... մեռավ...

5

Աչիկներով սև սաթի,
Վարսերով զանգուր,



Նրա գործը հաղթական
Կապրի կենդանի,
Քեզ դեպի լույս ապագան
Անշեղ կտանի:

## ԿՐԵՄԼԻ ՄՈՏ

*ՄԱՐՈ ՄԱՐԳԱՐՅԱՆ*

Ահա Մոսկվան մեր երազած,
Փողոցներով լայն ու երկար,
Պալատները երկինք հասած
Ու Կրեմլը աստղանկար:
Ողջ աշխարհն է ուզում հասնել,
Աստղերին այս ջինջ ու հստակ,
Իսկ դու այսքան փոքրիկ արդեն
Քայլում ես այս աստղերի տակ:
Նայիր սրան, իմ ջի՛նջ որդի
Անմեղ լեզվով մի խոսք ասա,

Մեր խնդության, մեր լույս բախտի
Ամենավառ նշանն է սա:
Բոլոր մեծ ու փոքրի համար
Խնդությունն են այստեղ հյուսում,
Այստեղից են բոլորն իրենց
Երջանկության երգը լսում:
Երգիր դու էլ քո պարզ լեզվով
Երջանկությունն այս անաղարտ
Կյանքի գարուն ձեր անունից
Ու մայրերից երախտապարտ:

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆ

(Դպրոցական տարիները Թիֆլիսում)

Ն. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Թումանյանը լրիվ միջնակարգ կրթություն չի ստացել: Կյանքի պայմաններն այնքան ծանր էին, որ նա՝ 1883 թվականին ընդունվելով Ներսիսյան դպրոցի 2-րդ դասարան, ստիպված 1886 թվականի մայիսին հեռացավ չորրորդ դասարանից:

Բայց Թումանյանը ծարավի էր գիտության և շարունակ պարապում էր ընթերցանությամբ: Իր մեծ ընթերցասիրության, արտակարգ ընդունակությունների և աշխատասիրության շնորհիվ, նա դարձավ ժամանակի ժողովրդական մեծ բանաստեղծներից մեկը:

Նա շատ կենսուրախ, սրախոս, աղնիվ և համեստ, բոլորի կողմից սիրված և լավ ընկեր է եղել: Սիրով օգնել է թույլ աշակերտներին, գրքեր կարդացել, երգեր սովորեցրել նրանց: Թումանյանն ունեցել է իր մտերիմ ընկերների շրջանը, հաճախ դպրոցից, պտույտի է դուրս եկել Թիֆլիսի շրջակայքում և այլ վայրերում, դիտել ժողովրդի նիստ ու կացը: Նա գրել սկսել է 10—11 տարեկան հասակից:

Աշակերտական տարիներին, ինչպես գյուղում՝ մեծերից, ծերունիներից, այնպես էլ Թիֆլիսում՝ իր դասընկերներից նա շատ է լսել ժողովրդական առակներ ու լեգենդներ. լսել է, և դեռ այն ժամանակ, մի մասը գրի առել ու մշակել: Այդ լեգենդներից ու առակներից են՝ «Շունն ու կատուն» և «Անբախտ վաճառականները», որ լսել է նա իր քեռի Իսայից ամառը սարերում: «Անբախտ վաճառականներ»-ի մասին նա գրում է.

«...Էդ առակը աշակերտ ժամանակս Լոռի իմ քեռուցս եմ լսել ու տպածների մեջ իմ առաջին գրվածքներից մինն է...

Մի ժամանակ (1885—1887) էդ տեսակ բաներ, ժողովրդական առակներ ու լեգենդներ շատ էի գրում բարբառով ու շատ էլ ունեի, բայց որովհետև չէի պահում, դեսդեն կորան, նրանցից մնացին «Շունն ու կատուն», մին էլ «Անբախտ վաճառականները»...



Թումանյանի գրական վաղ տպավորությունները, առաջին կարդացած գրքերն են՝ Խ. Աբովյանի «Վերք Հայաստանին», Միքայել Նալբանդյանի հոդվածները և երգերը: «Խաչատուր Աբովյանի «Վերք Հայաստանին» երկուսս էլ թեպետ վաղուց կարդացել էինք, բայց ցանկանում էինք նորից կարդալ, ու չէր ճարվում, Հովհաննեսի հայրն ուներ. նամակ գրեց, ուղարկեցին, նորից կարդացինք» — գրում է իր դասընկերներից մեկը:

Նույն այդ աշակերտական տարիներին ռուս բանաստեղծներից Թումանյանը կարդում է Պուշկինի և Լերմոնտովի բանաստեղծությունները և պոեմներից մի քանիսը, ինչպես և Կռիլովի առակները:

Թումանյանը սովորություն է ունեցել իր նոր գրածները կարդալ ընկերների շրջանում.

«Շատ հաճախ, մանավանդ շաբաթ երեկոները, մեր ընկեր և իմ հայրենակից Մելքոն Ասլիբեկյանի մոտ երկար ժամեր մեծ դոհունակությամբ լսում էինք նրա պատմվածքները, նրա գրվածքները: Առհասարակ

հրապուրիչ էր նրա խոսքը»— գրում է իր ժամանակակիցներից մեկը։

1885—86 թվականներին դպրոցը նրան այլևս չի բավարարում. նա մտածում է հեռանալու մասին։

«Եվ շատ կարդալուց էր գուցե, որ նրա ճաշակը այնքան զարգացավ, որ նա էլ չէր հավանում դպրոցն ու այնտեղի դասավանդությունը,— պատմում է Թումանյանի ընկեր, գրող Ան. Աբովյանը,— այնպես որ շարունակ ձգտում էր դպրոցից դուրս գալ, պատրաստվել և գնալ ուրիշ տեղ բարձրագույն ուսում ստանալու։

Դպրոցից դուրս գալուց հետո՝ նա սկսեց հաճախել քաղաքային գրադարան-ընթերցարանը և գրքեր կարդալով պարապել»։

Թումանյանը երազում էր ուսումը շարունակել. գնալ Մոսկվա, Պետերբուրգ, բայց այդ նրան չհաջողվեց։

Հովհաննես Թումանյանը մեծ տեղ էր տալիս ինքնազարգացմանը, մտավոր կանոնավոր ուսմանը։ Գրադարանները հաճախելուց բացի, նա իր սուղ միջոցներով հաճախ գրքեր էր գնում։ Ընկերները, տեսնելով իրենց ընկերոջ ընթերցասիրությունը, օրինակ են առնում նրանից և իրենք էլ սկսում են գրքեր գնել։

Ներսիսյան դպրոցից հեռանալուց հետո, նա միառժամանակ մնում է գյուղում։ Ամառն անց է կացնում բնության գրկում, գյուղացիների շրջանում և շրջագայում է մոտակա վայրերը, մասնակցում գյուղական՝ հանդի ու կալի աշխատանքներին։

«Նա ավելի սիրում էր անասուններն արոտ անելը — տավարածությունը։ Տանում էր անասուններն ազատ թողնում անտառում, ինքը մի քարի գլխին նստած կամ մի ծառի տակ պառկած անձնատուր լինում իր ցնորքներին...

Անասուններն էլ էին նկատում, որ նա իրանց մասին չէր մտածում, և արածելով հեռանում, շատ անգամ կորչում էին։ Իսկ նա այդ ժամանակ մեջքի վրա պառկած, մտազբաղ, աչքերը հառած հոյակապ երկնակամարի խորքը կամ այնտեղ մխված բարձր գագաթներին, գլխի վերևը շարժվող տերևների մեղմ շրշյունի, թռչունների ծվոցի ու ծլվլոցի ձայներով թովված, արթուն երազներ էր տեսնում։

...Ահա Թիֆլիսը, հին ահագին Թիֆլիսը... դանդաղ, լայնածավալ Քուռը խաղաղ թավալվում է քաղաքի գոռոցի, հարայհրոցի մեջ, որպես քավթառ ծերունին, առանց ուշք դարձնելու, իրան-իրան մոմռում է աղմկող երեխաների մեջ։

Ահա հրաշալի տները... քարվանսարաները... ահա Ներսիսյան դպրոցը՝ հոյակապ տաճարն ուսման... մանուկներ, պատանիներ, միրուքավոր երիտասարդներ լիքը. երգում են... կարդում են հայերեն, ռուսերեն, ֆրանսերեն»...

Այսպես էր վերհիշում բանաստեղծը գյուղում անցկացրած իր պատանեկության օրերը և դպրոցական տարիները Թիֆլիսում իր «Դեպի հայրենիք» անտիպ գործում։

Տասնյոթամյա պատանին տեսնում է գյուղացիների ծանր ու խավար կյանքը։ Այդ տպավորությունների տակ էլ նա 1887 թվականին գրում է իր առաջին պոեմը՝ «Մարոն» և մի շարք բանաստեղծություններ՝ «Գութանի երգը», «Հին օրհնություն» և այլն։

Ծնվելով լեռնոտ և գեղեցիկ երկրում, այնտեղ անցկացնելով իր մանկության տարիները, Թումանյանը հենց այդտեղ էլ ստանում է բանաստեղծական առաջին տպավորությունները, որոնք անջնջելի հետք են թողնում նրա ողջ կյանքի և ստեղծագործության վրա։

«Բնությունն ինձ համար ամեն ինչ է։ Գուցե մանկության տպավորություններից է, բայց ես ինձ թեթև եմ զգում բնության մեջ, մանավանդ մեր սարերում»...

Հարազատներից, հայրենի շրջանի բանիմաց ծերունիներից շարունակ ժողովրդական խոսք ու զրույց, առակ ու լեգենդ հավաքելով, անմիջականորեն ժողովրդական ստեղծագործության վճիտ աղբյուրից անսպառ նյութեր քաղելով, պատանի բանաստեղծը մշակում է դրանք, կերտում է իր գրական գոհարները։

## «Գ Ի Ք Ո Ր Ը»

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Դարձել եմ ես իսկական
Մի փոքրիկ Գիքոր,
Գլխիս դրել եմ փափախ,
Հագել մի հին շոր:

Ես խաղալու եմ Գիքոր,
Անիկն էլ՝ Նանի,
Փոքրիկ Արամը՝ Գալո,
Դայանեն՝ Զանի:

Բազազ Արտեմ էլ ահա
Դարձել է Արտոն,
Համբո խաղում է Արան,
Իսկ Նելլին՝ Նատո:

Կայտառ Մարոն իր դերում
Շատ է լրջացել.
Իր հագած նոր շորերում
Դեդի է դարձել:

Թեմիսյորը՝ մեր Կամոն
Հիշեցնում է մեզ.
— Խաղն սկսում ենք շուտով,
Կարգի բերեք ձեզ:

Եվ սկսում ենք այսպես
«Գիքորը» խաղալ...

Համբոն Գիքորին գյուղից
Տանում է քաղաք...

***

Շատ ենք հուզվում բոլորս.
Այնքա՜ն ենք տխրում...
Ա՜խ, երանի՝ Գիքորը
Ծնվեր մեր դարում:

Մեզ հետ կերգեր, կխաղար,
Ուրախ կլիներ,
Մեզ պես դպրոց կգնար,
Լավ կսովորեր:




## ՀԵՏԱՔՐՔԻՐ ՕՐ

*Բացվում է Երևանի գեղատեսիլ առավոտը: Շեփորի առաջին կանչի հետ Արաբկիրի № 1 քաղաքային ճամբարի պիոներները շարվում են հրապարակում: Հնչում է ճամբարի պետի ձայնը:*

*— Պատրա՜ստ...*

*Տղաներն ու աղջիկները սկսում են կատարել լիցքային վարժությունները:*

*Այս բակում ամեն առավոտ եռուզեռ է տիրում: Սահմանված ժամից ոչ ոք չի ուշանում: Բոլորը ծանոթ են ճամբարային օրվա ռեժիմին, ոչ մեկը չի փորձում խանգարել այն:*

*Բակի կենտրոնում, բարձր կայմի վրա թեթև քամուց ծածանվում է կարմիր դրոշը:*

*Ուրախ ու հետաքրքիր է անցնում երեխաների կյանքն այստեղ: Նրանք զանազան սպորտ-խաղեր են կազմակերպում, պարում ու երգում են խարույկի շուրջը: Նրանք արդեն մի քանի անգամ կոլեկտիվ կինո-դիտումներ են կազմակերպել, եղել են Պատանի հանդիսատեսի թատրոնում: Բացի այդ, իրենց ուժերով փոքրիկ պիեսներ են բեմադրել:*

*Երեխաները հաճախ բարձրաձայն ընթերցանություն են կազմակերպում: Ահա դրուժինայի խորհրդի նախագահը կարդում է Ելենա Կոշևայայի «Պատմվածք որդու մասին» գիրքը: Պիոներները լարված ուշադրությամբ լսում են: Իսկ երբ ավարտվում է ընթերցանությունը, բոլորը մի պահ լռում են: Նրանք մի բան են մտածում՝ նմանվել Օլեգին, լինել նրա պես համարձակ, նրա նման սիրել Հայրենիքը:*

*Արդեն ուշ երեկո է: Բակում վառվում է խարույկը: Երեխաները նստել են նրա շուրջը: Կարմրավուն բոցը լուսավորել է պայծառացած դեմքերը: Հնչում է «Պատանի պիոներների երգը»: Խարույկի մոտ մեկը մյուսի ետևից ելույթներ են ունենում շնորհալի տղաներն ու աղջիկները: Ահա գեղեցկադեմ Մարոն բարձրաձայն արտասանում է Ն. Զարյանի «Խաղաղության աղավնին»:*

*Խարույկի վերջին կրակները մեղմորեն բոցկլտում են, պիոներները շարվում են տողանի: Սովետական Հայաստանի Պետական հիմնի հնչյունների տակ դրոշն իջեցվում է:*

*Ավարտվում է պիոներական ուրախ և հետաքրքիր օրերից մեկը:*

Գ. ՈՒՄՐ-ՃԱՏ

# ՆՐԱ՛ՆՑ ՁԵՌՔԵՐՈՎ

Ա. ՍԵԿՈՅԱՆ

Նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ



Դեպի դպրոց տանող ճանապարհով վազում էր հազիվ տասներեք տարեկան մի աղջիկ։ Նա մի պահ շունչ առավ ճանապարհի եզրին գտնվող հուշաղբյուրի մոտ, բուռ ջուր շփեց դեմքին, ապա հիշելով, որ ընկերներին անչափ պետք է ուրախացներ նոր լուրով, շարունակեց վազել։

Մատղաշ ծառերի միջից երևում էր սպիտակ շենքը։ Դա հենց Ոսկեվազի միջնակարգ դպրոցն էր։

Բակի ցանկապատի ամբողջ երկայնքով մեկ նորատունկ բարդիներն էին կանգնել։ Դրանց առջև խոնարհվել էին երկամյա ուռենիները։ Ավելի վերևում խմբեր էին կազմել թթենիները, ծիրանիներն ու դեղձենիները... Այդ բոլորը դպրոցի պատանի միչուրինականների աճեցրածներն էին։ Այդ երեսունյոթ պատանու ջանքերով ընդարձակ բակում արդեն հասակ են առել մոտ 350 պտղատու և դեկորատիվ ծառեր։ Ծառերի կանաչ պարսպից առաջ գտնվում են բանջարեղենների անհամար մարգերը, թմբերը։

Հենց սրանց մեջ էլ աղջիկը տեսավ աշխատող երեխաներին։

— Էհե՜յ... երեխանե՛ր, թե իմանաք ի՜նչ լուր եմ բերել...— բացագանչեց նա։

Մարգերից վեր բարձրացան մի քանի արևահար դեմքեր։

— Ի՞նչ լուր, Դոնա՛րա...

— Ստալինգրադի՞ց...

— Նամա՞կ,— միաբերան ճչացին երեխաները և անմիջապես շրջապատեցին Դոնարային։

— Ընկեր Ադիբեկյանը հիմա կբերի... չգիտեմ ինչ են գրել... կկարդա...

— Ուռա՜,— թռչկոտելով բացագանչեցին երեխաները՝ օդում թափահարելով փոքր բահերն ու բրիչները.— պատասխանել են...

Ուրախությունը պատահողմի պես միանգամից իր գիրկն առավ երեխաներին, ապա տերևների նման ցրեց նրանց մարգերի մեջ։

Լոբիներն այնպես էին բոյ քաշել, որ երեխաներից շատերը չէին երևում նրանց մեջ։ Պոմիդորներն այնքան ծանրացել էին, որ հազիվ էին կանգնած մնում հենակների վրա։ Կանաչին էին տալիս պղպեղները, իսկ պատի տակ դդումն էր սկսում շիկնել։ Բարակիրան վարունգներն էլ թաքնվել էին թըփերի մեջ...

Ջանասիրությամբ էին խնամում պատանի միչուրինականներն իրենց բույսերը։ Շաբաթը երկու անգամ մարգերն ազատում էին մոլախոտերից, ջրում։ Եվ ահա դպրոցամերձ հողամասը դարձել էր բուրմունքով լի մի պարտեզ։

...Երկու ամիս առաջ մի քանի տասնյակ ծառից բացի ուրիշ ոչինչ չկար այդտեղ։ Պատանի միչուրինականների աշխատանքները ղեկավարող բնագիտության դասատու ընկեր Ադիբեկյանը այն ժամանակ ասաց.

— Այս տարի մենք պետք է մշակենք դպրոցամերձ հողամասը։

Երեխաները տարակուսած նայեցին իրար. հնարավո՞ր է այդպիսի քարքարոտ տեղում որևէ բույս աճեցնել։

— Կարո՛ղ ենք,— շարունակեց ուսուցիչը և ձեռքը մեկնեց դեպի դաշտերը, ուր կոլխոզնիկները քարեր էին հավաքում։

— Այնտեղ նայեցեք։ Մենք էլ կարող ենք։ Կոլտնտեսությունը կօգնի մեզ. մի օրով տրակտոր են տալիս։

Երեխաների աչքերը փայլեցին։ Հիանալի բան. կոլտնտեսությունն այս լարված օրերին իրենց տրակտոր է տալիս։ Էլ ի՞նչը կարող է խանգարել իրենց։ Եվ հենց հաջորդ օրը երեխաներն աշխատանքի անցան։

Բնասերներին օգնության էին գալիս

փոքրերը։ Մրջյունի նման նրանք լցվում էին հողամաս և քարերը դուրս՛ կրում։

Ապա սկսվեց ցանքը։ Սերմերն էլ իրենք էին բերում, ցանելուց հետո փոցխով հողի բարակ շերտը վրա տալիս։

Այդ օրերին էր, որ որոշում կայացվեց սերմեր ուղարկել Ստալինգրադի հիդրոկայանի պատանի միչուրինականներին։ Որոշումն այնպես ոգևորեց երեխաներին, որ հենց հաջորդ առավոտյան տասնյակ կապույտ ծրարներ դրվեցին ուսուցչի սեղանին։ Դրանց վրա ռուսերեն գրված էր սերմի անունը և մշակման ժամանակն ու ձևը։ Ապա միչուրինականների կողմից այսպիսի մի նամակ գրվեց.

«Թանկագին բարեկամներ.

Մենք, Հայկական ռեսպուբլիկայի Աշտարակի շրջանի Ոսկեվազ գյուղի պատանի բնասերներս, մեծ ցանկություն ունենք բարեկամական կապի մեջ մտնել ձեզ հետ և մի որևէ բանով օգնել... Աշնանը կուղարկենք այնպիսի ծառերի սերմեր, որոնք առանձնապես սքանչելի են ստացվում Արարատյան դաշտավայրում։ Խնդրում ենք արդյունքների մասին անպայման գրել մեզ։

Ոսկեվազի միջնակարգ դպրոցի պատանի բնասերներ»։

Ծանրոցն էլ հասցեագրեցին այսպես.

«Ստալինգրադի հիդրոկայան, բանվորական ավան № 1 միջնակարգ դպրոց, պատանի միչուրինականներին»։

Անցան շաբաթներ. բայց ոչ մի լուր։ Երեխաները կարծում էին, թե ծանրոցը ճանապարհին կորել է և ցավում էին դրա համար։ Եվ հանկարծ նամակ Ստալինգրադից...

Այդ լուրը ցնծությամբ ընդունեցին պատանի շերամապահներ՝ Աիդա Համբարձումյանը և Ժենյա Բադալյանը, որոնք թթենու տերևներ էին տարել կաբինետ և դուրս էին գալիս։

— Ի՞նչ են գրել նամակում, հետաքրքիր է,— ինքնիրեն շշնջաց 6-րդ դասարանցի Հենրիկ Մնացականյանը։—Տեսնես իմ բողկն ու ճակնդեղն աճե՞լ են այնտեղ։

— Իսկ իմ դդումի սերմերը չե՞ն խառնըվել մյուսներին,— սկսեց անհանգստանալ Գոհարիկ Ռուբենյանը։

— Ընկեր Աղիբեկյանը,— նկատելով ուսուցչին բացագանչեց Դոնարան։

Երեխաներն իսկույն շրջապատեցին ուսուցչին։ Նա էլ էր հուզված։ Զգալով, որ երեխաներն այրվում են հետաքրքրությունից, ուսուցիչը նստեց առաջին իսկ պատահած ուռենու տակ՝ քարի վրա։

— «Թանկագին բարեկամնե՛ր...»—սկսեց ուսուցիչը։

Երեխաներն ամբողջովին ուշադրություն դարձան։

«Մենք անչափ շնորհակալ ենք ձեր հոգատարության համար... Ծանրոցն ստացել ենք հիսուն օր առաջ, սակայն ուզում էինք պատասխան ուղարկել սերմերի արդյունքը տեսնելուց հետո։ Այժմ, մեր լայնածավալ այգում Ոսկեվազի պատանի միչուրինականների անունով ունենք մի փոքր պարտեզ։ Ձեզանից յուրաքանչյուրն ունի իր մարգը, իր բույսը։ Մենք աշխատում ենք այնպես խնամել դրանք, ինչպես դուք եք սովոր անել...

Ուրեմն եկող գարնանը մենք կունենանք արևոտ Հայաստանի պտղատու ծառերից... Ինչքա՞ն շնորհակալ ենք։ Սակայն՝ մենք մի բան ենք ուզում խնդրել ձեզ. արդյոք չեք կարող ծառապտղի սերմերն ինքներդ բերել։ Հյուր եկեք մեզ մոտ։ Այնքան բան կտեսնեք այստեղ՝ հերոս քաղաքում...

Ջերմ բարևներով № 1 միջնակարգ դպրոցի պատանի բնասերներ»։

Ուսուցիչը լռեց։ Նամակն ավարտված էր։

Նրանց շուրջը շնչում էր իրենց ստեղծած ջահել պարտեզը։



# ԿՐՈՍՎՈՐԴ

## «ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ»




### ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

1. Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի նախագահ: 3. Նախառևոլյուցիոն բոլշևիկյան լրագիր: 4. Սովետահայ բանաստեղծ, Ստալինյան մրցանակի լաուրեատ: 5. Ֆրանսիայի Կոմունիստական պարտիայի քարտուղար: 8. Մեծ Առաջնորդի ծննդավայրը: 9. Սովետական Միության Հերոս, կոմերիտուհի: 10. Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի պատասխանատու քարտուղար: 12. Գաղութ Աֆրիկայում, որը պայքարում է իր անկախության համար: 13. Սովետական նշանավոր գիտնական, ակադեմիկոս, Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի անդամ: 14. Սովետական Միության Հերոս, պիոներ: 18. Բելոռուս գրող, Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի անդամ: 19. Պետություն, որը դեմ է խաղաղության:

### ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

2. Ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի Կոմունիստական պարտիայի քարտուղար: 6. Խաղաղության լագերը գլխավորող երկիր: 7. Սովետական գրող, Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի անդամ: 8. Ռուս հանճարեղ գրող, ռևոլյուցիոներ, պիոներների լավագույն բարեկամ: 10. Ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկա, որը պայքարում է իր անկախության համար: 11. Քաղաք, որտեղ տեղի ունեցավ Խաղաղության առաջին կոնգրեսը: 15. Գետ, որի վրա տեղի ունեցած ճակատամարտում ռուս իշխաններից մեկը փայլուն հաղթանակ տարավ շվեդների դեմ: 16. Ժողովրդական-դեմոկրատական ռեսպուբլիկայի մայրաքաղաք: 17. Չեխ կոմունիստ գրող, Խաղաղության միջազգային մրցանակի լաուրեատ: 20. Կոմունիզմի մեծ կառուցումների վայր: 21. Հայաստանում եղած բրազիլիական գրող, «Ժողովուրդների միջև խաղաղությունն ամրապնդելու համար» Միջազգային Ստալինյան մրցանակի լաուրեատ: 22. Սովետական Միությանը սահմանակից երկիր: 23. Նեգր հայտնի երգիչ, խաղաղության բոցաշունչ մարտիկ: 24. Գործ, որի համար պայքարում են ամբողջ աշխարհի հասարակ մարդիկ:

*Կազմեց՝ ՀԱՅԿ ԽՈՒԴՈՅԱՆԸ*

*(Պոլիտեխնիկ ինստիտուտի ուսանող)*

## ԱՆՑՆԵԼ ԱՓՍԵՆԵՐԻ ՄԻՋՈՎ

Մի անգամ ջոկատավարը հատակին շարեց 10 ջրով լի ալյումինե ափսեներ՝ մեկը մյուսից մի քայլ հեռավորությամբ և ասաց.

— Երեխանե՛ր, ով աչքերը կապած կարողանա անցնել ափսեների միջով, չդիպչել, ոտքը նրանց մեջ չդնել, այս գիրքը նվեր կստանա։

Երեխաներն ուրախացան, նրանց հետաքրքրությունը շարժվեց։

Կապեցին Լենայի աչքերը։ Նա կամացուկ սկսեց քայլել, բայց հինգերորդ քայլում ոտքը դրեց ափսեի մեջ ու ջուրը թափեց։

Բոլորը ծիծաղեցին։

— Հարկավոր է մի քիչ լարել հիշողությունը և ուժեղացնել աչքաչափը,— ասաց ջոկատավարը բոլորին։

Կապեցին Սամվելի աչքերը։ Նա այնպես լավ գնաց, որ բոլորը հիացան։ Ջոկատավարը նրան նվիրեց խոստացած գիրքը։

Երբ հերթը հասավ չարաճճի Համիկին, և նրա աչքերը կապեցին, ջոկատավարն անմիջապես, առանց աղմուկի հավաքեց բոլոր ափսեները։ Համիկը սկսեց քայլել։ Նրան թվում էր, որ բոլորից լավ ինքն է կատարում խաղը։ Իսկ երեխաները դիտում էին Համիկի զգույշ շարժումները, զուսպ ծիծաղում։ Երեխաները պոռթկացին այն ժամանակ, երբ Համիկի աչքերը բացեցին և նա տեսավ, որ հատակին ափսեներ չկան։

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ նկ. Կ. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ
Լուսանկարները՝ Վ. ՉԵՐԿԱՍՈՎԻ

Խմբագիր՝ ՍԵՎՈՒՆՑ Գ.

Խմբագրական կոլեգիա՝ ԱՄԻՐՅԱՆ Ս., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹԵՎԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՇԱԽՈՒԼՅԱՆ Մ., ՏԱԼՅԱՆ Վ.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06

ՎՖ 02751։ Պատվեր 365, տիրաժ 5000։ Տպագրական 2 1/4 մամուլ։ Ստորագրված է տպագրության 26.V. 1953 թ.

Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1953 թ.




## ԱԼԵՔՍԱՆԴՐ ՄԱՏՐՈՍՈՎ

— Գվարդիայի շարքային, Սովետական Միության Հերոս Ալեքսանդր Մատրոսով,— հնչում է հրամանատարի թավ ձայնը։

— Գվարդիայի շարքային Ալեքսանդր Մատրոսովը խիզախի մահով զոհվեց Սովետական Հայրենիքի համար մղվող մարտերում,— պատասխանում է վաշտի աջ թևում կանգնած զինվորը։

Այսպես ամեն օր, առավոտյան և երեկոյան ստուգումների ժամանակ N զորամասի Ալեքսանդր Մատրոսովի անվան գնդի առաջին վաշտում



կարդում են Մատրոսովի անունը։ Նրա անունն ընդմիշտ մտցված է այդ վաշտի ցուցակում, իսկ գունդը կոչվում է Մատրոսովի անունով։ Այդ մասին տաս տարի առաջ հրաման տվեց Գերագույն Գլխավոր Հրամանատար Ի. Վ. Ստալինը։ Միաժամանակ նրան հետմահու շնորհվեց Սովետական Միության Հերոսի կոչում։

Ալեքսանդր Մատրոսովը զոհվեց 1943 թվականի փետրվարի 23-ին, Չերնուշկի գյուղի համար մղվող կռվում։ Զորամասը դուրս էր եկել հարձակման։ Հանկարծ մարտիկների ճանապարհը փակեց թշնամական դզոտի գնդացրային կրակը։ Սաշա Մատրոսովը սողաց դեպի դզոտը, բայց նռնակներով նրան չհաջողվեց դադարեցնել կրակը։ Միայն մի բանով կարելի է փրկել ընկերներին և ապահովել հարձակումը, միայն կյանքի գնով։ Եվ Սաշա Մատրոսովը իր մարմինը գցեց թշնամու հրակնատի վրա, իր կրծքով փակեց գնդակների ճանապարհը։ Հայրենիքի համար Մատրոսովը զոհեց իր կյանքը և անմահացավ։ Ընկեր Ստալինի հրամանով նրա անունը հավիտյան դարձավ վաշտի առաջին անունը, այն վաշտի, որի կյանքը փրկեց նա։

## ՌԻՄՍԿԻ-ԿՈՐՍԱԿՈՎ

Դուք շատ եք սիրում հեքիաթներ լսել։ Իսկ որքա՞ն լավ է, երբ բեմի վրա տեսնում եք սիրած հեքիաթի հերոսներին, լսում նրանց ձայնը, մանավանդ երբ հնչում է հիանալի երաժշտություն։ Ձեր տեսած հեքիաթ-օպերաները դուք ամբողջ կյանքում չեք մոռանա։

Ամենից շատ հեքիաթ-օպերաներ



գրել է ռուս մեծ կոմպոզիտոր Ռիմսկի-Կորսակովը։ Նրանն են «Ձյունանուշ», «Հեքիաթ Սալթան թագավորի մասին», «Ոսկե աքաղաղ», «Սադկո» և այլ հեքիաթ-օպերաները։

Նիկոլայ Ռիմսկի-Կորսակովը ծնվել է 1844 թվականի մարտի 18-ին Տիխվին քաղաքում։ Դեռ ինը տարեկան հասակում նա սկսում է երգեր հորինել, բայց միայն 1861 թվականից սկսեց լրջորեն զբաղվել երաժշտությամբ։ Չնայած դրան Ռիմսկի-Կորսակովը երաժշտական մեծ ժառանգություն է թողել։ Նա ունի 15 օպերա, բազմաթիվ ռոմանսներ և սիմֆոնիկ ստեղծագործություններ, որոնք մեծ հիացմունք են պատճառում լսողներին։

Հունիսի 21-ին լրանում է Ռիմսկի-Կորսակովի մահվան 45 տարին։

## ԲԼԵԶ ՊԱՍԿԱԼ

*«Հեղուկի կամ գազի վրա գործած ճնշումը առանց փոփոխության հաղորդվում է բոլոր ուղղություններով»։*

Դուք, երեխանե՛ր ֆիզիկայից այս օրենքը արդեն անցել եք։ Իսկ եթե դեռ չեք անցել, միևնույն է, կանցնեք, ձեր դպրոցի ֆիզիկայի կաբինետում փորձեր կկատարեք համոզվելու համար նրա ճշմարտության մեջ։ Այդ օրենքը կոչվում է Պասկալի օրենք։

Բլեզ Պասկալը ֆրանսիական նշանավոր գիտնական է։ Նա զբաղվել է մաթեմատիկայով և ֆիզիկայով։ Բլեզը դեռ փոքրիկ տղա էր, երբ հայտնի դարձավ նրա մաթեմատիկական տաղանդը, իսկ 16 տարեկան հասակում նա արդեն գիտական աշխատանքներ էր հրատարակում։ Պասկալը բազմաթիվ գյուտեր է արել ֆիզիկայի բնագավառում.



հնարել է չորս գործողության առաջին հաշվող մեքենան։ Նա գլխավորապես զբաղվել է բարոմետրային ճնշման, հեղուկների և գազերի միջոցով ճնշման հաղորդման հարցերով։ Նա մեծ ծառայություն է մատուցել գիտությանը։ Պասկալը մեռել է 1662 թվականին։

ԳԻՆԸ 2 Ռ.



Թբիլիսիի Ստալինի անվան արական № 1 միջնակարգ դպրոցի պիոներները դիտում են իրենց պատրաստած տրամվայի երթևեկությունը։



Գորիսի 2-րդ միջնակարգ դպրոցի ուսուցչուհի Սաթիկ Հայրապետյանը իր աշակերտների և աշակերտուհիների հետ։